## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1974

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԲԱՐՁՐ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԽԹԱՆՆԵՐԸ

Սովետական մարդկանց բարեկեցության աճի մասին հոգատարությունը գտնվում է ՍՄԿԿ պրակտիկ գործունեության կենտրոնում։ Կուսակցությունը հետևողականորեն ու անշեղորեն ձգտում է ավելի լրիվ բավարարելու սովետական մարդկանց նյութական ու հոգևոր հարաճուն պահանջները, բարելավելու բնակչության բնակարանային պայմանները, սոցիալ-կուլտուրական և կենցաղային սպասարկումը, ընդլայնելու ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը և բարձրացնելու դրանց որակը։

Կոմունիստական կուսակցության նկատմամբ սովետական ժողովրդի վստահության վառ դրսևորումը, նրա քաղաքականության համաժողովրդական պաշտպանության վկայությունը հանդիսացան սովետական երկրի պետական իշխանության բարձրագույն օրգանի հերթական ընտրությունները։ Հուլիսի վերջին կայացավ ՍՍՀՄ իններորդ գումարման Գերագույն սովետի առաջին սեսիան։ Դրան նախորդել էր ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը, որը քննարկել էր այդ սեսիայի հարցերը և ընդունել համապատասխան որոշում։ Ելույթ ունենալով սեսիայում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ ՍՍՀՄ Գերագույն սովետը և նրա նախագահությունը, ղեկավարվելով սովետական ժողովրդի արմատական շահերն արտահայտող կոմունիստական կուսակցության քաղաքականությամբ, հաջողությամբ լուծում էին երկրի սոցիալ-տնտեսական զարգացման ու նրա միջազգային հարաբերությունների կենսականորեն կարևոր հարցերը։ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի և ՍՍՀՄ Գերագույն սովետի սեսիայի արդյունքները ջերմ հավանության արժանացան սովետական մարդկանց կողմից. նրանք լի են վճռականությամբ՝ հաջողությամբ կատարելու ՍՄԿԿ XXIV համագումարի նշած սոցիալ-տնտեսական վեհ ծրագիրը։

Այդ ծրագրի իրականացումը մեծապես պայմանավորված է աշխատանքի արտադրողականության բարձրացումից, նրա անընդհատ աճին նպաստող նյութական ու բարոյական խթանների հետագա զարգացմամբ ու կատարելագործմամբ։ Կազմակերպելով այդ աշխատանքը, կուսակցությունը ելնում է մարքսիզմ-լենինիզմի այն կարևոր տեսական դրույթից, որ բաշխումը հասարակական վերարտադրության պասիվ օղակ չէ, այլ հանդես է գալիս որպես հասարակության տնտեսական ու սոցիալական զարգացման վրա ներգործելու ակտիվ լծակ։

Սոցիալիզմի անխախտ սկզբունքն է՝ «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի»։ Վ. Ի. Լենինը պատասխան է տվել այն հարցին, թե կենսական բարիքների բաշխման այդ սկզբունքը ինչպես կիրառել նոր հասարակարգի կոնկրետ պայմաններում։ Ինչպես կազմակերպել մրցությունը, Սովետական իշխանության հերթական խնդիրները, «Ձախ» երեխայության և մանր բուրժուականության մասին ու այլ աշխատություններում Վ. Ի. Լենինը խորհուրդ էր տալիս ընդհանուր հետաքրքրության և ուշադրության առարկա դարձնել տարբեր աշխատողների ու ձեռնարկությունների աշխատանքի արդյունքների համեմատումը, աշխատավարձի բարձրա-

նական խմբի վարպետների, ինժեներների ու տեխնիկների պաշտոնական դրույքները (միջին հաշվով, մինչև 30—40 տոկոս)։

Բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների ու ծառայողների մեծագույն մասի դրույքների ավելացումը ըստ աշխատանքի բաշխման սոցիալիստական սկզբունքի ավելի լրիվ կենսագործման, աշխատավարձի բնագավառում կուսակցության քաղաքականության հետևողական իրականացման կարևոր նախադրյալն է։

Զգալիորեն փոխվում են աշխատանքի վարձատրության պայմանները գյուղատնտեսության մեջ։ Բարձրացվում են կթվորուհիների, խոզապահների, հովիվների դրույքները, և դրանով առավելություններ են ստեղծվում անասնապահական կոմպլեքսների բանվորների աշխատանքի վարձատրության մեջ, որտեղ արտադրապրոցեսում լայնորեն կիրառվում են մեքենաների և մեխանիզմների սիստեմները։

Աշխատանքի վարձատրության նոր պայմաններին անցնելիս կարևոր է անվերապահ հատուցման հասնել այն միջոցներից, որ պետությունը ծախսում է աշխատավարձը բարձրացնելու վրա։ Այս կարևորագույն սոցիալ-տնտեսական միջոցառումն առավել մեծ հաջողությամբ կենսագործելու համար մինիստրությունների, գերատեսչությունների, միավորումների և ձեռնարկությունների կոլեկտիվները պետք է կատարեն նախապատրաստական մեծ աշխատանք, մասնավորապես, բարձրացնեն նորմավորման մակարդակը, գտնեն և գործի դնեն լրացուցիչ ռեզերվներ։

Ուշագրավ է, որ աշխատանքի վարձատրության սիստեմների կատարելագործման մեջ նշանակալի ավանդ են ներդնում այն ձեռնարկությունների կոլեկտիվները, որոնք տնտեսական ռեֆորմի սկզբունքների համաձայն օժտված են մեծ իրավունքներով՝ խրախուսման սիստեմները կատարելագործելու և դրանք որպես արտադրության վերելքի հուժկու լծակ օգտագործելու նպատակով։

Այս տեսակետից, անկասկած, առանձնահատուկ հետաքրքրություն է ներկայացնում Շչոկինոյի քիմկոմբինատի փորձը, որն արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի հավանությանը։ Այդ առաջադիմական մեթոդը հաջողությամբ յուրացնում են մյուս ձեռնարկությունները։ Դրանց մեծ մասում շեշտակիորեն բարձրանում են աշխատանքի արտադրողականության աճման տեմպերը։

Մեր երկրում շչոկինյան մեթոդի աշխատանքի են անցել ավելի քան մեկ և կես հազար ձեռնարկություններ, սովխոզներ, ինչպես նաև ծովային, գետային ու ձկնորսական նավեր։ Այժմ շչոկինյան մեթոդը այլևս սոսկ փորձ չէ։ Արտադրական կոլեկտիվներին իրավունք է տրվում լիովին օգտագործելու այդ փորձը։ Այդպիսի իրավունք արդեն վերապահվել է Ծայրագույն Հյուսիսի շրջաններում, Հեռավոր Արևելքում, Սիբիրում, Ուրալում, Ղազախստանում, Միջին Ասիայի հանրապետություններում, Վոլգա-Վյատկայի շրջանում գտնվող արտադրական ճյուղերի բոլոր ձեռնարկություններին։ Մինչև այս տարվա վերջը այդ իրավունքը կստանան նաև Պովոլժիեի, Դոնբասի և Ռոստովի մարզի ձեռնարկությունները։ Բացի դրանից, շչոկինյան մեթոդով կարող են աշխատել նաև ՍՍՀՄ մի շարք մինիստրությունների՝ թեթև արդյունաբերության, սև մետալուրգիայի, հաղորդակցության ճանապարհների ձեռնարկությունները։

Շատ կոլեկտիվներ արդեն հաջողությամբ օգտագործում են այդ իրավունքը։ Կրասնոյարսկի մետաքսի կոմբինատում, օրինակ, մասնագիտությունների համատեղման և սպասարկման գոտիների ընդլայնման հաշվին, կարճ ժամկետում ազատվել է ավելի քան երկու հարյուր, Ժդանովի Իլյիչի անվան մետալուրգիական գործարանում՝ ավելի քան չորս հարյուր մարդ։ Սակայն շատ ձեռնարկություններում չեն շտապում օգտվել տրված հնարավորություններից և թույլ են կիրառում շչոկինյան փորձը։ Այդ արժեքավոր փորձին անբավարար ուշադրություն են նվիրում շատ ձեռնարկությունների ու կազմակերպությունների, ինչպես նաև կենտրոնական մի քանի մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարները։

Արդյունաբերության բոլոր աշխատողների և կոլեկտիվների խրախուսումը



պետք է կազմակերպվի այնպես, որ նրանք ընդունեն լարված պլաններ։ Երկիրը շահագրգռված է ոչ միայն պարզապես արտադրանքի արտադրության ավելացմամբ, այլև այն բանում, որ բոլոր այն ապրանքները, որ գործարաններն ու ֆաբրիկաները կարող են արտադրել առաջադրանքից դուրս, հաշվառված լինեն պետական պլաններով։ Այդ դեպքում միայն կարելի է երաշխավորել ժողովրդական տնտեսության ճյուղերի համամասնական զարգացումը, էկոնոմիկայի բոլոր օղակների հստակ փոխգործողությունը։

Այս կապակցությամբ մեծ նշանակություն ունի մայրաքաղաքի առաջավոր ձեռնարկությունների՝ «Կոմպրեսոր», ՍՍՀՄ 50-ամյակի անվան ավտոմատ գծերի, ժամացույցների երկրորդ գործարանների, «Կրասնի բոգատիր» արտադրական միավորման, Է. Թելմանի անվան ժանյակային վարագույր-շղարշի ֆաբրիկայի և մի շարք այլ ձեռնարկությունների կոլեկտիվների նախաձեռնությունը, որ արժանացել է ՍՄԿԿ Մոսկվայի քաղաքային կոմիտեի բյուրոյի հավանությանը. այդ ձեռնարկությունները 1974 թ. համար ընդունել են հանդիպական, ավելի լարված պլաններ։ Այժմ Մոսկվայի գործարաններում, ֆաբրիկաներում և միավորումներում ծավալվել է 1975 թ. հանդիպական պլանների մշակումը։

Հանդիպական պլանների մշակումն ու ընդունումը ձեռնարկությունների և ճյուղերի կողմից ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ արտադրության ավելացման արդյունավետ ուղին է։ Հարկավոր է հմտորեն օգտագործել տնտեսական մեխանիզմը, որը կոլեկտիվներին մղում է ընդունել և իրականացնել հանդիպական պլանները այն հաշվով, որ արդյունաբերության բոլոր աշխատողները՝ շարքային բանվորներից մինչև արտադրության հրամանատարները, շահագրգռված լինեն ամեն կերպ օգտագործելու արտադրության ռեզերվները։

Ինչպես հայտնի է, արդյունաբերական ձեռնարկություններում ժամանակ առ ժամանակ, բանվորների որակավորման և վարպետության բարձրացման, տեխնիկայի ու տեխնոլոգիայի կատարելագործման, աշխատանքի կազմակերպման հետ զուգընթաց վերանայվում են նորմաները։ Սա օրինաչափ, բնական պրոցես է։ Սակայն չի կարելի աչք փակել այն բանի հանդեպ, որ արտադրության ամենևին ոչ բոլոր աշխատողներն են շահագրգռված նորմաների վերանայմամբ։ Բանվորների մի մասը պահում է ռեզերվները, չի շտապում դրանք ի սպաս դնել հնգամյակին, քանի որ գիտե, որ նորմաների զգալի գերակատարումը կարող է նորից վերանայել տալ դրանք։ Ինչպե՞ս ավելի շատ շահագրգռել աշխատավորներին՝ աշխատելու առավելագույն արդյունավետությամբ, ընդունելու լարված առաջադրանքներ և արտադրության բարձր նորմաներ։ Այս հարցի պատասխանին են սպասում արդյունաբերության շատ ճյուղերի աշխատողները։

Այս տեսակետից աշխատանքի ուսանելի փորձ է կուտակել Ռոստովի «Խիմպրոդուկտ» արտադրական միավորումը։ Նրա ձեռնարկություններից մեկում՝ Ակսայի պլաստմասսաների գործարանում մի քանի տարի շարունակ հաջողությամբ կիրառվում է սեփական նախաձեռնությամբ նորմաները բարձրացնելու համար բանվորներին խրախուսելու սիստեմը։ Դրա էությունը հետևյալն է։

Եթե բանվորն ինքն է որոշում բարձրացնել արտադրության նորման ասենք 10 տոկոսով, ապա երեք ամսվա ընթացքում ստացվելիք տնտեսման կեսը վճարվում է նրան որպես միանվագ վարձատրություն։ Նորման 15—20 տոկոսով բարձրացնելու դեպքում՝ վճարվում է վեց ամսվա տնտեսման կեսը։ Վարձատրությունը վճարվում է անմիջապես, նոր նորմա սահմանելու մասին հրամանը արձակվելու հետ միաժամանակ։ Այսպիսով, ձեռնարկությունը կարծես որպես կանխավճար բանվորին տալիս է պարգև սպասվելիք տնտեսման համար, հավատացած լինելով, որ այդ միջոցների հարյուրապատիկը կվերադառնա։ Եվ այդպես էլ ստացվում է։

Պարգևատրման նոր կարգը ուժեղ խթան հանդիսացավ աշխատավորների

նախաձեռնությունը զարգացնելու համար։ Ամեն տարի պլաստմասսաների գործարանում նորման բարձրացնելու խնդրանքով դիմումներ է տալիս գործավարձավորների մոտավորապես կեսը։ Փորձի ժամանակ նորմաները վերանայեցին մի քանի հարյուր մարդ։ Դրա շնորհիվ տնտեսված է տասնյակ հազարավոր նորմա-ժամ, պայմանականորեն ազատված է ավելի քան 400 աշխատող։ Տնտեսված գումարի կեսը աշխատավարձի ֆոնդից վճարվեց այն բանվորներին, որոնք թողարկել են 2 միլիոն 125 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք։ Այլ կերպ ասած, աշխատավորների նյութական վարձատրության համար ծախսված ամեն մի ռուբլի ետ բերեց 16 ռուբլի 60 կոպեկ։ Բացի այդ, լրացուցիչ տնտեսման մի մասը ծախսվում է արտադրանքի որակը բարձրացնելու համար բանվորներին խրախուսելու նպատակով։

Այսպիսով, բանվորների սեփական նախաձեռնությամբ նորմաների բարձրացումը իր հետ բերում է լրացուցիչ նյութական խրախուսանք, օգնում է բարձրացնելու արտադրության ընդհանուր արդյունավետությունը։ Սա, իր հերթին, նպաստում է ավելացնելու ձեռնարկության խրախուսման ֆոնդերը, որոնք վերջին տարիներին աճել են մի քանի անգամ։ Արտադրության աճի տեմպերը պլաստմասսաների գործարանում շատ բարձր են, ընդ որում դրանք ձեռք են բերվել առանց որևէ կապիտալ ներդրման։ Աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը գործարանում երեք անգամ ավելի բարձր են, քան աշխատավարձի աճի տեմպերը։

Ակսայի պլաստմասսաների գործարանի տնտեսական փորձի արդյունքները ուղիներ են բացում տնտեսական ու սոցիալական մի շարք սկզբունքային խնդիրներ լուծելու համար։ Իրենց՝ բանվորների ընդգրկումը նորմաների վերանայմանը, նպաստում է արտադրության կառավարմանը աշխատավորների մասնակցության արդյունավետության բարձրացմանը, արտադրական ֆոնդերի օգտագործման բարելավմանը։ «Ակսայի մեթոդը» նոր հնարավորություններ է բացում մեր տնտեսական զարգացման գլխավոր պրոբլեմի լուծման՝ աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի արագացման համար։

Արդյունաբերության տարբեր ճյուղերում հաջողությամբ կիրառվում են ապրանքների որակի էական բարձրացմանը նպաստող խրախուսման սիստեմներ։ Առանձնապես կարևոր է նյութական խրախուսման լծակը ավելի լայնորեն գործադրել ժողովրդական սպառման ապրանքների որակը բարելավելու համար։ Այս ուղղությամբ որոնումներ են կատարվում տեքստիլ, կոշիկի, կարի արդյունաբերական միավորումներում և ֆաբրիկաներում։

Այսպես, «Պոդմոսկովիե» տեքստիլ արտադրական միավորումում դեռ հնգամյակի սկզբին մտցված էր նյութական խրախուսման սիստեմ՝ կախված արտադրանքի որակից։ Պահանջներ չկան այն աշխատողների նկատմամբ, որոնք տալիս են միջին որակի արտադրանք, բայց և ոչ մի լրացուցիչ վարձատրություն էլ նրանք չեն ստանում։ Կոլեկտիվի նպատակն է դառնում արտադրել միայն բարձրորակ արտադրանք, ըստ որում տարբերակումը խրախուսման գործում բավական մեծ է։ Տեսակայնության բարձրացումը թեկուզ տոկոսի տասներորդ մասով շատ զգալիորեն անդրադառնում է աշխատանքի վարձատրության վրա։

Նյութական և բարոյական խթանների ճիշտ, բարձր արդյունավետ օգտագործման օրինակ է ցույց տալիս Մոսկվայի Ս. Մ. Կիրովի անվան էլեկտրամեքենաշինական «Դինամո» գործարանի կոլեկտիվը։ Ինչպես հայտնի է, աշխատողների և ամբողջ կոլեկտիվների խրախուսման գործում դինամոյականները գլխավորը համարում են ոչ թե նորմաների կատարման ու գերակատարման մակարդակը, այլ անձնական առաջադրանքների իրացումը, որոնք հաշվարկվում են յուրաքանչյուր աշխատողի համար առանձին և շատ ճշտորեն հաշվի են առնվում նրա կիրառած սարքավորման առանձնահատկությունները, մարդու որակավորման մակարդակը, վերջին մի քանի տարիների նրա աշխատանքի ցուցանիշները։ Դրա շնորհիվ հնգամյակի սկզբից իսկ կոլեկտիվը հա-



սել է աշխատանքի արտադրողականության աճի բացառիկ բարձր տեմպերի 37,3 տոկոսի։ Ժամկետից շուտ՝ երեք տարի չորս ամսում կոլեկտիվը այդ ցուցանիշով հասավ 1975 թվականի համար պլանավորված մակարդակին։ «Դինամո» գործարանի կոլեկտիվին հղած իր ողջույնի մեջ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը դա անվանեց աշխատանքային մեծ նվաճում։

Անձնական տարեկան և հնգամյա պլանները, ինչպես ցույց է տալիս փորձը, լավ հիմք են բանվորների աշխատանքային մրցությունը ծավալելու համար։ Դրանք պայմաններ են ստեղծում արդյունքների առավելագույն համեմատելիության նպատակով, թույլ են տալիս արագ երևան հանել ու լայնորեն տարածել առաջավորների փորձը, բարձրացնել բանվորների ու մասնագետների պատասխանատվությունը առաջադրանքների կատարման համար։ Այն բանվորները, որոնք մնացածներից առաջ են անցել անձնական պլանների կատարմամբ, ստանում են նաև արժանի բարոյական խրախուսանք. նրանց մասին գրում է գործարանային բազմատիրաժ թերթը, նրանց նկարները ցուցադրվում են գործարանի տերիտորիայի աչքի ընկնող տեղում, իսկ լավագույններից լավագույնները ժամկետից շուտ ստանում են նոր բնակարանների բանալիները։ «Դինամո» գործարանի փորձը այժմ կիրառվում է շատ ճյուղերի հարյուրավոր ձեռնարկություններում։ Հավանության արժանի է ծանր, էներգետիկ և տրանսպորտային մեքենաշինության մինիստրության նախաձեռնությունը, որը արագ ու եռանդուն միջոցներ ձեռք առավ ճյուղի փաստորեն բոլոր ձեռնարկություններում անձնական պլանների հիման վրա մրցությունը կազմակերպելու համար։

Արտադրողաբար գործելու, աշխատանքին պատասխանատվությամբ վերաբերվելու, մարդկանց խրախուսելու նոր ձևերի արդյունավետ որոնումներ են կատարվում Դոնեցկի մարզում։ Այստեղ, Նովոկրամատորսկի Ս. Օրջոնիկիձեի անվան մեքենաշինական գործարանում, վերջերս արմատավորվել և հաջողությամբ կիրառվում է ստորին օղակի ղեկավարների՝ մեխանիկական արտադրամասերի տեղամասերի վարպետների խրախուսման նոր սիստեմ։ Դրա էությունն այն է, որ յուրաքանչյուր տեղամասի համար նախօրոք, խիստ մտածված նորմատիվներով, հաշվարկվում է ինչ-որ մի «առավելագույն-օպտիմալ» կարողություն՝ արտադրության մակարդակ, որի դեպքում կոլեկտիվը տվյալ որակավորման աշխատողներով և տվյալ սարքավորումներով թողարկեր առավել քանակությամբ արտադրանք։ Սա բավական բարձր, թեև սկզբունքորեն հասանելի բնագիծ է։ Վարպետների համար հաշվարկվող ամսական պարգևատրումների չափը կախման մեջ է դրվում այն բանից, թե իրենց ղեկավարած կոլեկտիվները որքանով են մոտեցել եղած հնարավորությունների իրացմանը։ Ինչպես ցույց է տալիս այս սիստեմի կիրառման առաջին փորձը, այն նպաստում է արտադրության ու աշխատանքի կազմակերպման բարելավմանը տեղամասերում, մարդկանց ավելի հստակ ու ռիթմիկ աշխատանքին։ Նովոկրամատորսկցիների փորձը հետաքրքրեց նաև բազմաթիվ այլ ճյուղերի աշխատողներին։ Փոքր-ինչ ձևափոխված այն կիրառվում է Դոնբասի ածխարդյունաբերության մեջ. աշխատողներին առաջադրանքների լարվածության համեմատ խրախուսելու դրական փորձ է կուտակել, մասնավորապես, Աբակումովի անվան ածխահորը։

Անհրաժեշտ է ընդգծել, որ տնտեսական ռեֆորմը արտադրական կոլեկտիվներին տվել է բավական լայն իրավունքներ խրախուսման տարբեր սիստեմներ մշակելու և կիրառելու մարզում, հաշվի առնելով յուրաքանչյուր արտադրության, տվյալ կոլեկտիվների առջև կանգնած խնդիրների յուրահատկությունը։ Հայտնի են օրինակներ, երբ, հմտորեն օգտագործելով նյութական և բարոյական խրախուսման լծակները, ձեռնարկությունները հասել են ռիթմիկության բարձրացման, պայմանագրային պարտավորությունների ավելի հստակ կատարման, արտադրանքի որակի շեշտակի բարձրացման։ Այսպես, մի քանի տարի առաջ Մոսկվայի ավտոմոբիլային ձեռնարկություններում՝ Լիխաչովի անվան և Լենինյան կոմերիտմիության անվան գործարաններում, սահմանվեցին որակի, այսպես կոչված, ներգործարանային նշաններ, որոնց շնորհումը հանգույցներին ու մասերին ուղեկցվում էր հաջողության հասած կոլեկ-

նարագ կերպով հասնել մեր հասարակության ամենավեհ իդեալներին՝ առա ինչը պետք է լինի սովետական մարդկանց բարձր արտադրողական աշխատանքի գլխավոր խթանը: Մենք չենք կարող բավարարվել աշխատանքի ամենաբարձր արդյունքներով անգամ, եթե դրանց հիմքում ընկած են գռփողական տրամադրությունները, անձնական հարստացման ձգտումը, երևույթներ, որոնք հեռու են իսկական հայրենասիրությունից, սոցիալիստական բարոյականության նորմերից: Այստեղից անմիջականորեն հետևում է, որ բարոյական ու նյութական խթանման ձևերի ու մեթոդների կատարելագործումը և որպես արգասիք՝ աշխատավորների նյութական բարեկեցության աճը պետք է ուղեկցվեն կոլեկտիվներում դաստիարակչական աշխատանքի ուժեղացմամբ, յուրաքանչյուր սովետական մարդու՝ սոցիալիստական մեծ հայրենիքի աշխատավորի ու քաղաքացու նկատմամբ պահանջկոտության բարձրացմամբ:

Սովետական մարդկանց բարեկեցության աճի մասին կուսակցության ու պետության հոգատարությունը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատողները պատասխանում են հարվածային աշխատանքով, մրցության նոր նվաճումներով: Մեր ժողովրդի հերոսական աշխատանքի արդյունքներն արտացոլում են գտել ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման առաջին կիսամյակի պետական պլանի կատարման հանրագումարում: Այդ ժամանակաշրջանում բարձրացան արտադրության և աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը, հասարակական արտադրության արդյունավետությունը: Տարեկան պլանը կատարվում է զգալի գերազանցումով: Արդյունաբերական արտադրանքի այս տարվա կիսամյա պլանը, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է 8,3 տոկոսով՝ նախատեսված 6,8-ի փոխարեն: Աշխատանքի արտադրողականության աճը կազմեց 6,8 տոկոս՝ պլանային 6-ի փոխարեն: Պլանից դուրս իրացվել է 4,5 մլրդ ռուբլու արտադրանք: Առաջին կիսամյակի պլանը գերակատարել են բոլոր արդյունաբերական մինիստրություններն ու բոլոր հանրապետությունները:

Առաջիկայի առաջնահերթ խնդիրն է՝ ժամկետից շուտ կատարել 1974 թ. պլանը, հաջողությամբ ավարտել իններորդ հնգամյակը: Սոցիալիստական մըրցությունը կազմակերպելով «Տալ ավելի շատ արտադրանք, ավելի լավ որակի, ավելի քիչ ծախսումներով» լոզունգով, կուսակցական կազմակերպությունները, արհմիությունները, կոմերիտմիությունը պետք է հատուկ ուշադրություն դարձնեն բարձր արտադրողական աշխատանքի խթանների զարգացմանը, զգայուն կերպով արձագանքեն առաջավորների նախաձեռնությանը, ակտիվորեն աջակցեն նրանց փորձի՝ մեր սոցիալիստական էկոնոմիկայի հիրավի ոսկե ֆոնդի տարածմանը:

«Коммунист», 1974, № 11

## ՀՆԳԱՄՅԱԿԻ ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐՆԵՐԸ

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԿՈԼՏՆՏԵՍԱԿԱՆՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎԱՐՁԱՏՐՈՒԹՅՈՒՆԸ*

Վ. Ա. ԱՐԱՔՍՅԱՆ

Կոլտնտեսային կարգի հետագա զարգացումը, նրա ներքին հնարավորությունների ըստ ամենայնի բացահայտումն ու օգտագործումը մեր երկրում կոմունիզմի կառուցման կարևորագույն նախապայմաններից են:

Այժմ ավելի քան հրատապ են դառնում կոլտնտեսություններում աշխատանքի վարձատրության սիստեմի հետագա զարգացումն ու բարելավումը: Վարձատրությունը խստորեն պետք է համապատասխանի ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի պահանջներին և նպաստի արտադրանքի որակի, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասունների մթերատվության բարձրացմանը, արտադրության ծախսերի կրճատմանը:

Վերջին տարիներին մեր հանրապետության գյուղատնտեսության զարգացման բնորոշ առանձնահատկությունը գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումն է և կոլտնտեսային արտադրության արդյունավետության բարձրացումը: Դրանց զուգընթաց աճել է նաև աշխատավարձը: Բավական է նշել, որ մեկ մարդ-օրվա հաշվով կոլտնտեսականների վարձատրությունը 1973 թ. կազմել է 4,98 ռուբլի, 1965-ի 3,29 ռուբլու դիմաց:

Կոլտնտեսությունների էկոնոմիկայի աճը և աշխատանքի վարձատրությունը փոխադարձ կապի մեջ են, և վերջինիս կատարելագործումն ունի խոշոր նշանակություն: Հանրապետության շատ կոլտնտեսություններում 1966—1967 թթ. մինչև այժմ կիրառվում են սովխոզային վարձաչափերն ու դրույքները: Դրանց շնորհիվ արդեն 1968—1969 թթ. որոշ կոլտնտեսություններում աշխատանքի վարձատրությունն ավելի բարձր էր, քան սովխոզներում:

Այժմ աշխատանքի երաշխավորված վարձատրությունը սեփական միջոցների հաշվին կատարող, ինչպես նաև վարձատրության կայուն մակարդակ ունեցող կոլտնտեսություններին խորհուրդ է տրվում աշխօրային սիստեմի փոխարեն կիրառել դրամականը: Հայտնի է, որ դրամական բարձր վարձատրության կարելի է հասնել այն դեպքում, երբ դա անխզելիորեն կապվում է աշխատանքի վերջնական արդյունքի՝ արտադրվող մթերքների քանակի և որակի հետ: Մինչդեռ հանրապետության շատ կոլտնտեսություններում աշխատավարձը տրվում է կատարված աշխատանքի ծավալի համար՝ առանց այն կապելու ստացված արդյունքի հետ, իսկ լրացուցիչ վարձատրությունը՝ արտապլանային արտադրանքի համար և, որպես կանոն, փոքր գումարով: Որպեսզի կոլտնտեսականների լրացուցիչ վարձատրության տեսակարար կշիռը համեմատաբար բարձր լինի, անհրաժեշտ է արտադրության պլանը գերակատարել բարձր տոկոսներով:

* Տպագրվում է հարցադրման կարգով։— Խմբ.։

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՆԱԽԱՊԱՅՄԱՆԸ

Վ. Ս. ԱՍՏՎԱԾԱՏՈՒՐՈՎ
Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ

*Մեր երկրի զարգացման արդի փուլում շատ մեծ է կոլտնտեսությունների
դերը բնակչությանը սննդամթերքներով և արդյունաբերությունը գյուղատըն-
տեսական հումքով ապահովելու գործում: Բավական է ասել, որ հանրապե-
տությունում գյուղատնտեսության կողմից իրացվող ապրանքային արտադրան-
քի 37 և պետական գնումների 45 տոկոսը բաժին է ընկնում կոլտնտեսություն-
ներին: Պետական մթերումների ձևերը կատարելագործելու, պլանավորման
նոր կարգ սահմանելու, որոշ մթերքների գնման գները բարձրացնելու շնորհիվ
զգալիորեն աճել է կոլտնտեսությունների համախառն արտադրանքը և բարձ-
րացել կոլտնտեսային արտադրության ապրանքայնությունը:*

*ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման ութերորդ հնգամյակում
զգալիորեն ավելացավ խորդենու, կարտոֆիլի, բանջարեղենի, բոստանային
կուլտուրաների, պտուղների, խաղողի, կաթի և ձվի արտադրությունը: Եվ դա
այն դեպքում, երբ կոլտնտեսությունների 11,2 տոկոսը վերակազմվել է սով-
խոզների: Հիշյալ ժամանակաշրջանում զգալիորեն աճել են նաև կոլտնտեսա-
յին արտադրության ապրանքային արտադրանքն ու ապրանքայնությունը: Կոլ-
տնտեսությունների ապրանքային արտադրանքը զգալիորեն ավելացել է նաև
ընթացիկ հնգամյակի երեք տարում: Դրա վկայությունն է ստորև բերված
աղյուսակը:*

Ապրանքային արտադրանքի ծավալը և հիմնական գյուղատնտեսական
մթերքների ապրանքայնությունը ՀՍՍՀ կոլտնտեսություններում

| Արտադրանք | Ապրանքային արտադրանք: Ամբողջը (հազար տոննա) | | Միջին հաշվով մեկ տնտեսության ընկնում է (տոննա) | | Ապրանքայնությունը (տոկոսներով) | | Պետական գնումների տեսակարար կշիռը ապրանքային արտադրանքի ընդհանուր ծավալում (տոկոսներով) | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | 1970 թ. | 1973 թ. | 1970 թ. | 1973 թ. | 1970 թ. | 1973 թ. | 1970 թ. | 1973 թ. |
| Հացահատիկ | 20,7 | 23,2 | 44 | 62 | 12,6 | 15,1 | 47 | 66 |
| Կարտոֆիլ | 12,6 | 16,9 | 26 | 45 | 27,1 | 44,2 | 88 | 93 |
| Բանջարեղեն | 135,6 | 196,8 | 285 | 523 | 96,5 | 97,8 | 93 | 98 |
| Պտուղներ | 16,5 | 15,5 | 35 | 41 | 92,9 | 98,1 | 80 | 86 |
| Խաղող | 104,2 | 63,5 | 219 | 167 | 97,7 | 99,2 | 98 | 99 |
| Միս (կենդանի քաշով) | 23,8 | 23,4 | 50 | 62 | 84,1 | 91,4 | 77 | 82 |
| Կաթ | 94,2 | 94,9 | 198 | 252 | 75,2 | 79,2 | 93 | 95 |
| Ձու (հազար հատ) | 26462 | 29507 | 56 | 78 | 95,3 | 95,4 | 76 | 85 |

*Այս տվյալների վերլուծությունը ցույց է տալիս, որ հանրապետության*



*կոլտնտեսությունները մեծ հնարավորություններ և ռեզերվներ ունեն բերքա-
տվության և անասունների մթերատվության բարձրացմամբ ապրանքային ար-
տադրանքն այսուհետև ավելացնելու համար: Այդ է վկայում առաջավոր տըն-
տեսությունների և շրջանների փորձը: Այնտեղ, ուր անասունների մթերատվու-
թյունը բարձր է, ստացվում է ավելի շատ համախառն և ապրանքային արտա-
դրանք: Կաթի ապրանքայնության բարձրացման վրա կովերի մթերատվության
մակարդակի ազդեցությունն ակնառու երևում է Երևանի քաղաքամերձ չորս
շրջանների (Աշտարակի, Մասիսի, Էջմիածնի և Շահումյանի) 1970 թվականի
տարեկան հաշվետվությունների հիման վրա կազմված հետևյալ աղյուսակից.*

Կովերի մթերատվության ազդեցությունը կաթի ապրանքայնության վրա

| Խմբեր | Կոլտնտեսությունների խմբերն ըստ մեկ կովի միջին կաթնատվության (կգ) | Կոլտնտեսությունների թիվը խմբում | Կովերի միջին կաթնատվությունը (կգ) | Կաթի ապրանքայնությունը (տոկոսներով) | Իրացված է ապրանքային կաթ (ցենտներով): Միջին հաշվով մեկ կոլտնտեսության կողմից | Իրացված է ապրանքային կաթ (ցենտներով): 100 հեկտար գյուղատնտեսական հողահանդակների հաշվով | Մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը (ռուբ.) |
|---|---|---|---|---|---|---|---|
| I | Մինչև 1500 | 9 | 1147 | 66,0 | 784 | 91 | 30,2 |
| II | 1500—3000 | 38 | 2132 | 83,4 | 2048 | 356 | 28,9 |
| III | 3000 և ավելի | 10 | 3598 | 88,9 | 4023 | 929 | 26,8 |
| Միջին ցուցանիշը | | — | 2273 | 83,8 | 2195 | 440 | 28,4 |

*Անասունների մթերատվության աճին զուգընթաց, ավելանում է ո՛չ միայն
կաթի ապրանքային արտադրությունը, այլև ապրանքայնությունը: Եթե առա-
ջին խմբի կոլտնտեսություններում, որտեղ կովերի կաթնատվությունը մինչև
1.500 կգ է, կաթի ապրանքայնությունը 66 տոկոս է, ապա երրորդ խմբում
այն կազմում է 88,9 տոկոս կամ 22,9 տոկոսով ավելի: Եթե առաջին խմբի
կոլտնտեսությունները կովերի կաթնատվությունը հասցնեն երրորդի մակար-
դակին, ապա լրացուցիչ կստանան 22 հազար ցենտներ կաթ: Կովերի մթե-
րատվության աճն ազդում է կոլտնտեսությունների գործունեության նաև
մյուս ցուցանիշների, մասնավորապես, դրամական եկամուտների, արտա-
դրանքի ինքնարժեքի վրա:*

*Պետք է նշել, որ կաթի ինքնարժեքն իրացման միջին գնից բարձր է ո՛չ
միայն հիշյալ տնտեսություններում, այլև, ընդհանուր առմամբ, հանրապե-
տության կոլտնտեսություններում: Բավական է ասել, որ 1970 թ. հանրապե-
տության 470 կոլտնտեսություններից 397-ում մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը
գերազանցել է 20 ռուբլուց: Այդ է պատճառը, որ տնտեսությունները կաթի
արտադրությունից բավական վնասներ են կրել: Ուսումնասիրությունը ցույց է
տալիս, որ անասնաբուժական-անասնապահական և կազմակերպական կոմպ-
լեքսի ճիշտ կիրառմամբ կարելի է ապահովել կովերի մթերատվության աճը, հե-
տևաբար իջեցնել կաթի ինքնարժեքը: Այսպես, Շահումյանի շրջանի XVIII կուս-
համագումարի անվան կոլտնտեսությունում, որտեղ յուրաքանչյուր կովի միջին
կաթնատվությունը 4.595 կգ է, մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը, շատ տնտե-
սությունների համեմատությամբ, 7 ռ. 80 կոպեկով ցածր է եղել: Դրա շնորհիվ
տնտեսությունը 1970 թ. կաթի ու կաթնամթերքների իրացումից ստացել է
4. 691 ռուբլի շահույթ: Այս հաջողությունն ապահովվել է անասնապահական
աշխատանքների մեքենայացմամբ: Կոլտնտեսությունում նաև արդյունավետ են
կատարվում աշխատանքային, նյութական ու դրամական ծախսերը, համեմա-
տաբար լավ է կերի բազան: Կոլտնտեսությունն այսպիսի բարձր ցուցանիշ-
ներ ուներ նաև այս հնգամյակի անցած երեք տարում:*

*Հանրապետության կոլտնտեսություններում անասունների մթերատվու-
թյունը վերջին տարիներին մի փոքր բարձրացել է: Այսպես, 1965 թ. համեմա-*

Հացահատիկային կուլտուրաների, մսի, կաթի, ձվի և գյուղատնտեսական այլ մթերքների գնման գները բարձրացնելու և պլանից ավելի վաճառվածի համար 50 տոկոս հավելագնի շնորհիվ մեր հանրապետությունում զգալի չափով ավելացել են արտապլանային պետական գնումները։ Այսպես, վերջին երեք տարում կոլտնտեսային շուկաներում իրացված հացահատիկի քանակն աճել է ընդամենը 12,6, մինչդեռ պետական գնումներինը՝ 79,6 տոկոսով, իսկ արտապլանային գնումները՝ ավելի քան 3,7 անգամ։

Կաթի և կաթնամթերքների արտապլանային գնումները 1971 թ., նախորդ տարվա համեմատությամբ (կաթի հաշվով), ավելացել են 45,2 տոկոսով։ Առավել ևս մեծ է ձվի արտապլանային պետական գնումների աճը։ 1971 թ. հանրապետության կոլտնտեսությունները միայն պլանից ավելի վաճառված կաթի գնման գների հավելավճարների հաշվին լրացուցիչ ստացել են 2.527,9, անասունների ու թռչունների՝ 1.516,2, ձվի՝ 198,5 հազար ռուբլի։

Մեր կարծիքով, գյուղատնտեսական մթերքների ավելցուկները հեռանկարում հիմնականում կիրացվեն արտապլանային պետական գնումների միջոցով, որոնք կոլտնտեսություններին հնարավորություն կընձեռեն ո՛չ միայն կրճատելու մթերքների իրացման հետ կապված ծախսերը, այլև ուժեղացնելու կոլտնտեսականների մասնակցությունը հանրային տնտեսությանը։ Պետական գնումների սիստեմը տնտեսություններին հնարավորություն է տալիս անխափան ու պլանաչափ իրացնել ապրանքային արտադրանքի հիմնական մասը, նպաստում գյուղատնտեսական արտադրանքի անընդհատ աճին, որն, իր հերթին, մեծ դեր է խաղում բնակչության պահանջմունքների առավել լրիվ բավարարման գործում։ Կոլտնտեսությունների պարտքն է՝ ժամանակին ու լրիվ կատարել գյուղատնտեսական մթերքների պետական գնումների պլանները։ Ըստ որում, դա պետք է ապահովվի առանց գյուղատնտեսական արտադրությանը վնաս հասցնելու։

Պետությանը վաճառվող ապրանքային արտադրանքի աճի վրա առաջներում բացասաբար էին անդրադառնում մթերման ցածր գները, որոնք բնավ չէին հատուցում հացահատիկի, մսի, կաթի և մի քանի այլ մթերքների արտադրության փաստացի ծախսերը, ուստի և տնտեսություններին հնարավորություն չէին տալիս անհրաժեշտ կուտակումներ ունենալ ընդլայնված վերարտադրության համար։

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումը (1965 թ.) նոր փուլ բացեց պետության և կոլտնտեսությունների տնտեսական փոխհարաբերություններում։ Ստեղծվեցին գնումների՝ մի շարք տարիների համար նախատեսված կայուն պլաններ և նյութական խթանման ճկուն սիստեմ։

Գյուղատնտեսական մթերքների մթերումները պետության պլան-պատվերներով և տնտեսական խթանման միջոցառումները բարերար ազդեցություն ունեցան մթերքների արտադրությունն ու մթերումները, հետևաբար, կոլտնտեսությունների եկամուտներն ավելացնելու գործում։ Միայն 1972 թ. կոլտնտեսություններն ու պետական տնտեսությունները, նախորդ տարվա համեմատությամբ, պետությանն ավելի են վաճառել 46,7 հազար ցենտներ միս, 105,9 հազար ցենտներ կաթ, 4,3 մլն ձու։ Այս ցուցանիշներն ավելի բարձր կլինեին, եթե կոլտնտեսություններն ու պետական տնտեսությունները կատարեին մթերքների իրացման իրենց կայուն պլանները։ Ցավոք, կոլտնտեսությունների գրեթե մեկ քառորդը թերակատարել է պետությանը մսի վաճառքը, մեկ հինգերորդը՝ ձվի, 38 տոկոսը՝ բրդի վաճառքի պլանը։ Շատ տնտեսություններ չեն կատարել կարտոֆիլի ու բանջարեղենի վաճառքի պլանները։ Հաշվարկները ցույց են տալիս, որ եթե 1972 թ. հանրապետության բոլոր տնտեսությունները կատարեին գնումների պլանները, ապա միայն կոլտնտեսություններից պետությունը լրացուցիչ կստանար միս ավելի քան 8 հազար, բուրդ՝ 1,2 հազար, կարտոֆիլ՝ 28 հազար, բանջարեղեն՝ 122 հազար ցենտներ, 1,1 մլն ձու։

Կոլտնտեսությունների դրամական եկամուտների հիմնական աղբյուրներն են պետությանը գյուղատնտեսական մթերքների վաճառքից գոյացող գումարները։ 1971 թ. 187,7 մլն ռուբլի դրամական եկամուտներից 156 մլն կամ եկամուտների 83,6 տոկոսը կոլտնտեսություններն ստացել են պետությանն արտադրանք վաճառելուց։



Պետությանը հանձնված և վաճառված արտադրանքի ծավալի մեծացման, գնման գների որոշ չափով բարձրացման շնորհիվ կոլտնտեսությունների, պետական տնտեսությունների և բնակչության դրամական եկամուտները վերջին տարիներս զգալիորեն աճել են։ Այսպես, կոլտնտեսությունների, պետական տնտեսությունների և բնակչության դրամական եկամուտները 1972-ին, 1965 թ. համեմատությամբ, աճել են 85 տոկոսով, որը մոտ 154 մլն ռուբլի է։

1973 թ. հանրապետության կոլտնտեսությունները, սովխոզները և պետական այլ ձեռնարկություններ, 1970 թ. համեմատությամբ, պետությանը ավելի են վաճառել հացահատիկ՝ 15,6, կարտոֆիլ՝ 10,1, բանջարեղեն՝ 90,7, պտուղ՝ 2,1, միս՝ կենդանի քաշով՝ 10,9, կաթ՝ 32,9 հազար տոննա, 44,2 մլն ձու, 2,7 հազար ցենտներ բուրդ և այլն։

Պետությանը գյուղատնտեսական մթերքների վաճառքից հանրային տնտեսություններում գոյացող եկամուտների աճը նպաստել է նրանց էկոնոմիկայի ամրապնդմանն ու կոլտնտեսային գյուղացիության կենսամակարդակի բարձրացմանը։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների ավելացման բնագավառում մեր հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների առջև մեծ ու պատասխանատու խնդիրներ են ծառացած։ Ըստ պլանի, ընթացիկ հնգամյակում գյուղատնտեսության միջին տարեկան համախառն արտադրանքը, նախորդի համեմատությամբ, պետք է աճի 32 տոկոսով։ Նախատեսվում է մոտ ապագայում բնակչության կարտոֆիլի, բանջարեղենի, մրգերի, անարատ կաթնամթերքների, ձվի պահանջմունքները հիմնականում լրիվ բավարարել կոլտնտեսությունների և սովխոզների արտադրանքի հաշվին։ Ինչպես մեր ողջ երկրի, այնպես էլ Սովետական Հայաստանի գյուղի աշխատավորները արձագանքելով ՍՄԿԿ Կենտկոմի՝ կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված դիմումին, լայնորեն ծավալել են սոցիալիստական մրցություն հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարում նոր բնագծեր նվաճելու համար։ Մեր հանրապետության կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները, սովխոզների բանվորներն ու բանվորուհիները, գյուղատնտեսության մասնագետները պարտավորվել են գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալն այս տարի, 1973 թ. համեմատությամբ, ավելացնել 13,4 տոկոսով, պետությանը վաճառել հացահատիկ՝ 60, բանջարեղեն՝ 262, կարտոֆիլ՝ 56,6, բոստանային կուլտուրաներ՝ 76,4, գործարանային շաքարի ճակնդեղ՝ մոտ 118, ծխախոտ՝ 15, միս՝ ավելի քան՝ 64, կաթ՝ 218, բուրդ՝ 4.650 հազար տոննա, ձու՝ մոտ 156 մլն հատ, ստանալ խաղող 194,1, պտուղ՝ ավելի քան 80 հազար տոննա։ Անշուշտ, այս ամենը կնպաստի ապրանքայնության աճին և կոլտնտեսությունների ու սովխոզների եկամտի բարձրացմանը։

ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կատարման նշանաբանով ծավալելով սոցիալիստական մրցություն՝ մեր հանրապետության կոլտնտեսային գյուղացիությունը, սովխոզների աշխատավորներն ամեն ջանք կգործադրեն իրականացնելու ընդունած սոցիալիստական պարտավորությունները և ժամկետից շուտ կատարելու հնգամյակի որոշիչ տարվա առաջադրանքները։

# ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆԸ ՏԱԼ ՊԱՐԵՆԱՅԻՆ ԲԱՐՁՐՈՐԱԿ ԱՐՏԱԴՐԱՆՔ

Է. Հ. ՕՐԴՅԱՆ, Ա. Ս. ԱՍԱՏՐՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածուներ

*ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակի գլխավոր խնդիրը ժողովրդի կենսամակարդակի հետագա բարձրացումն է։ Բնակչության նյութական պահանջմունքների բավարարման գործում վճռական դերը պատկանում է պարենային ապրանքներին։ Նկատի ունենալով դրանց արտադրության ավելացման և որակի բարելավման կարևորությունը, ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով խնդիր է դրվում ընթացիկ հնգամյակում* «Սննդի, մսի, կաթի և ձկնեղենի արդյունաբերության *մեջ արտադրանքի արտադրությունն ավելացնել 33—35 տոկոսով, այդ թվում մսինը՝ 40—43, անարատ կաթնամթերքինը՝ 29, շաքարինը՝ մոտավորապես 34, սննդային ձկնամթերքինը՝ առնվազն 47 տոկոսով։ Բարձրացնել սննդամթերքների որակը, ընդլայնել տեսականին և բարելավել դրանց սննդարարությունն ու համը»* (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, *էջ 342)։*

*Հնգամյակի վերջին տարում մեր հանրապետության սննդարդյունաբերության արտադրանքի աճը, 1970 թ. համեմատությամբ, կկազմի 35 տոկոս։ Այդ ժամանակամիջոցում պահածոների թողարկումը կավելանա 66, գինիներինը՝ 16, մսինը՝ 47, բուսական յուղինը՝ 23 տոկոսով։*

*Պարենային ապրանքների արտադրության բարձր տեմպերի շնորհիվ բնակչության կողմից տարեցտարի ավելանում է դրանց սպառումը։ Օրինակ, մսի և մսամթերքների սպառումը անցած հնգամյակում աճել է 17, կաթնամթերքներինը՝ 23, ձվինը՝ 28, շաքարինը՝ 13, բանջարեղեններինը՝ 14 տոկոսով։ Ընթացիկ հնգամյակում նախատեսվում է այդ մթերքների սպառումը համապատասխանաբար ավելացնել՝ 23, 11, 21, 11 և 33 տոկոսով։*

*Իններորդ հնգամյակի վերջում բնակչության մեկ շնչին ընկնող որոշ սննդամթերքների (շաքար և ձկնեղեն) սպառումը կգերազանցի ներկայումս գործող գիտականորեն սահմանված նորմաները, իսկ մնացած մթերքների սպառմամբ ընդհուպ կմոտենանք այդ նորմաներին։*

Բնակչության մեկ շնչին ընկնող մթերքների սպառման տարեկան նորմաները և սպառման փաստացի ու պլանային չափերը ՍՍՀՄ-ում (1965—1975 թթ.)

| Մթերքի անվանումը | Չափի միավորը | Մեկ շնչին ընկնող ռացիոնալ նորման | Մեկ շնչին ընկնող սպառում | | |
|---|---|---|---|---|---|
| | | | 1965 | 1970 | 1975 |
| Միս և մսամթերք | կգ | 86 | 41 | 48 | 59 |
| Կաթ և կաթնամթերք | » | 467 | 251 | 307 | 340 |
| Ձու | հատ | 365 | 124 | 157 | 192 |
| Ձուկ և ձկնամթերք | կգ | 16 | 12,6 | 15,4 | 22 |
| Շաքար | » | 33 | 34,2 | 38,8 | 43 |
| Բանջարեղեն | » | 164 | 72 | 82 | 109 |



*Աղյուսակից երևում է, որ մսի և մսամթերքի, կաթնամթերքի, շաքարի և բանջարեղենի նկատմամբ բնակչության պահանջարկը լիովին բավարարելու համար անհրաժեշտ է մեծ չափերով ավելացնել դրանց արտադրությունը։ Հատկանշական է, որ այդ հարցին անհրաժեշտ ուշադրություն նվիրվեց կուսակցության XXIV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, որտեղ մասնավորապես նշվեց. «...այսօր առանձնահատուկ նշա*նակություն է ստանում նաև պարենային և արդյունաբերական ապրանքներով, ինչպես նաև սպասարկմամբ բնակչության հարաճուն վճարունակ պահանջարկն ապահովելու *խնդիրը»* (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, *էջ 58)։*

*Մեր հանրապետությունում սննդի արդյունաբերության որոշ ապրանքների արտադրության հնգամյա առաջադրանքները հաջողությամբ են կատարվում։ Արդեն անցյալ տարի մսի, յուղի, պանրի արտադրությունը հասավ հնգամյակով նախատեսված մակարդակին։ 1973 թ. թողարկվել է մոտ 300 միլիոն տուփ պահածո։*

*ՀՍՍՀ սննդի, մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունների ձեռնարկությունները վերջին տարիներին մշակել և արտադրության մեջ են արմատավորել նյութա-տեխնիկական ու կազմակերպական մի շարք միջոցառումներ, որոնք նպաստել են պարենային ապրանքների տեսականու ընդլայնմանը և որակի բարձրացմանը։ Մսեղենի արդյունաբերության մեջ 1973 թ. յուրացվել են 6, իսկ սննդարդյունաբերության մեջ 16 նոր և բարելավված արտադրատեսակներ, որոնք մեծ պահանջարկ ունեն։ Կաթի արդյունաբերության մեջ իրենց որակով աչքի է ընկնում շվեյցարական պանիրը։ Հանրապետությունը տարեկան արտադրում է ավելի քան 800 տոննա այդպիսի պանիրներ, որոնք արտադրանքի ծավալով Միությունում գրավում են առաջատար տեղերից մեկը։ Անարատ կաթնամթերքների արտադրությունը հնգամյակի ընթացքում կհասնի 130 հազար տոննայի։ Դրանով քաղաքային բնակչության մեկ շնչին ընկնող կաթնամթերքների տարեկան քանակը 55-ից կհասնի 72 կգ։*

*ՀՍՍՀ սննդարդյունաբերության մի շարք արտադրանքներ իրենց որակով համապատասխանում են հայրենական և համաշխարհային համանման արտադրանքների լավագույն նմուշներին։ Բարձրորակ կոնյակները և գինիները համամիութենական և համաշխարհային համտեսներում միշտ արժանացել են բարձր գնահատականի։ Մեր գինիներն ու կոնյակները նվաճել են 85 մեդալ, այդ թվում՝ 54 ոսկե, 29 արծաթե և 2 բրոնզե։ Վերջին 14 տարում «Դվին» կոնյակը շահել է 8, «Հայաստան»-ը և «Տոնական»-ը՝ 6-ական, «Հոբելյանական»-ը՝ 5 ոսկե մեդալ։ Վեց ոսկե մեդալի է արժանացել սպիտակ «Մուսկաթ» գինին։*

*Հանրապետության պարենային ապրանքների 28 արտադրատեսակներ 1974 թ. մարտի մեկի դրությամբ արժանացել են որակի պետական նշանի։ Ընթացիկ տարում նախատեսվում է պետական որականիշի ներկայացնել սննդարդյունաբերության 13 արտադրատեսակներ, որոնցից 3-ը գինի— «Այգեշատ», «Օշական», «Աշտարակ», ինչպես նաև կոնյակի, պահածոների, ծխախոտի և այլ արտադրանմուշներ։*

*Պարենային ապրանքների որակի բնագավառում ձեռք բերված նվաճումների հետ մեկտեղ հարկ է նշել, որ հանրապետության ձեռնարկություններում արտադրվող սննդամթերքների մի շարք տեսակներ իրենց որակով դեռևս չեն համապատասխանում բնակչության պահանջներին։ Առանձնապես ցածր է կաթի և կաթնամթերքների, ոչ-ալկոհոլային խմիչքների, հանքային ջրերի, թռչնի մսի որակը։*

*ՀՍՍՀ առևտրի մինիստրության որակի պետական տեսչության ստուգման արդյունքները ցույց են տալիս, որ հանրապետության պարենային ապրանքներ արտադրող ձեռնարկություններում վերջին տարիներին զգալիորեն ավելացել է*

տիճանը, արտադրության հակասանիտարական վիճակը: 1972—1973 թվականներին զգալի տոկոս է կազմել կաթի և պանիրների առանձին տեսակների խոտանումը:

Մսի կոմբինատներում (Երևանի, Լենինականի) խախտվում է տեխնոլոգիական ռեժիմը, ինչպես անասունների սկզբնական, այնպես էլ մսի հետագա ջերմային վերամշակումների ժամանակ: Սպանդանոցներում հաճախակի են խախտվում անասունների մորթի, մսի կորատման, պահպանության ժամկետները: Շատ սահմանափակ է մսի կիսաֆաբրիկատների տեսականին, Նախապատրաստման ընթացքում իջնում է դրանց որակը: Տեխնոլոգիական ռեժիմի շեղումն առանձին ձեռնարկություններում խախտում է պետական ստանդարտներն ու տեխնիկական պայմանները: Այսպես, ըստ ՍՍՀՄ պետստանդարտի հայկական հանրապետական վարչության տվյալների՝ 1974 թ. առաջին կիսամյակում ՀՍՍՀ մննդարդյունաբերության մինիստրության 34 ձեռնարկություններից պետական ստանդարտների և տեխնիկական պայմանների խախտումներ են թույլ տվել 18-ը, կամ 53 տոկոսը, մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրության 7 ձեռնարկություններից՝ 4-ը կամ 57 տոկոսը, Հայկոոպի 9 ձեռնարկություններից՝ 6-ը կամ 66 տոկոսը: Խախտման հետևանքով 1974 թ. առաջին կիսամյակում վարչության տնտեսական սանկցիայով 340 հազ. ռուբլով տուգանվել են մի շարք ձեռնարկություններ (Երևանի կաթի և Ղափանի մսի կոմբինատները, Սյունիքի թռչնաբուծական ֆաբրիկան): Առանձին ձեռնարկությունների տարբեր ժամկետներով արգելվել է ստուգված ամբողջ արտադրանքի առաքումը (Երևանի ծխախոտի փորձարարական կոմբինատ, Սևանի և Լիճքի հանքային ջրերի գործարան, Երևանի շամպայն գինիների և Վերին Արտաշատի գինու գործարանները):

Տեխնոլոգիական ռեժիմի պահպանումը պարտադիր է յուրաքանչյուր ձեռնարկության համար, ուստի դրա խախտման մեղավորները պետք է ենթարկվեն խիստ պատասխանատվության:

Թողարկվող արտադրանքի որակի, ինչպես նաև ձեռնարկության տնտեսական մյուս ցուցանիշների վրա մեծ ազդեցություն են ունենում օգտագործվող հումքի և նյութերի սպառողական հատկությունները: Բարձրորակ պարենային ապրանքների արտադրության համար հումքը պետք է բավարարի ստանդարտի պահանջներին և պարունակի մաքսիմում չափով սննդանյութեր: Բարձրորակությունը պայմանավորում է արդյունավետ վերամշակում ու արագ իրացում և հակառակը:

Գյուղատնտեսական հումքի պետական մթերումների սիստեմն ընձեռում է բոլոր պայմանները, որպեսզի տնտեսություններն իրենց արտադրանքը հանձնեն վերամշակող ձեռնարկություններին՝ ըստ քանակի և որակի: Սակայն հետազոտությունները ցույց են տալիս, որ վերջին տարիներին հանրապետությունում զգալի չափով իջել է վերամշակվող ձեռնարկություններին տրրված հումքի որակը: Օրինակ, վերջին տասնամյակում հանրապետությունում մթերված խաղողի միջին շաքարայնությունը կազմել է 18 տոկոս, որը, նախապատերազմյան տարիների համեմատությամբ, զգալիորեն իջել է: Ընդհանրապես որակի բարձրացման համար մղվող պայքարը պետք է սկսվի հումքի բարելավումից:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Մինիստրների սովետի 1971 թ. փետրվարի 5-ի «Թողարկվող արտադրանքի որակի բարելավման համար ստանդարտների դերի բարձրացման» մասին որոշումն իրագործելու նպատակով հանրապետության համապատասխան մինիստրությունները, գերատեսչություններն ու կազմակերպությունները մշակել և ներդրել են մի շարք կազմակերպական տեխնիկական միջոցառումներ՝ թողարկվող արտադրանքի որակի բարելավման համար: Վերանայվել են սպառման ապրանքների՝ մինչև 1966—1968 թթ. հաստատված ավելի քան 245 անուն նորմատիվային տեխնիկական փաստաթղթեր, որոնցով թողարկված արտադրանքը համապատասխանում է սպառողների ժամանակակից պահանջներին:

Պարենային ապրանքների որակի բարելավման խնդիրները լուծելու գոր-



ծում կարևոր դեր է խաղում դրանց նկատմամբ բնակչության պահանջարկի հաշվառումը: Այն պետք է ուսումնասիրեն ոչ միայն առևտրական կազմակերպությունները, այլև արտադրող ձեռնարկությունները և համապատասխան գիտահետազոտական բաժանմունքները: Մինչև այժմ համամիութենական գիտահետազոտական պահանջարկի ինստիտուտի կատարած հետազոտությունները ցույց են տվել, որ բնակչության պահանջարկի բավարարման ոլորտում կան զգալի թերություններ: Միության տարբեր հանրապետություններում բնակչության պահանջարկն ուսումնասիրելու, արտադրանքի նոր նմուշները ցուցադրելու և պրոպագանդելու նպատակով սննդարդյունաբերության մինիստրություններին կից գործում է տեսականու կաբինետ: Մասնավորապես ուսանելի է Ուկրաինական ՍՍՀ սննդարդյունաբերության մինիստրության մեթոդական կաբինետի փորձը: Վերջինս օգնում է ձեռնարկություններին՝ ընդլայնելու արտադրանքի տեսականին, ներդնելու արտաքին ձևավորման լավագույն նմուշներ, ավելացնելու փաթեթավորված արտադրանքի թողարկումը:

Պարենային ապրանքների որակի բարձրացման գործում առաջնակարգ նշանակություն ունի դրանց ատեստավորումը, որը մեր հանրապետության ձեռնարկություններում իրականացվում է ՀՍՍՀ Մինիստրների սովետի 1972 թ. ապրիլի 25-ի № 209 որոշման համաձայն:

1971 թ. հուլիսից գործում է ՍՍՀՄ պետստանդարտի, պետպլանի, գիտության ու տեխնիկայի և ՍՍՀՄ գների պետական կոմիտեների հաստատած՝ պետական ճյուղային և գործարանային արդյունաբերական արտադրանքի որակի ատեստավորման միասնական սիստեմը: Բացի այդ, կան «ՀՍՍՀ արդյունաբերական արտադրանքի որակի ատեստավորման հանրապետական մեթոդական ցուցումները», որտեղ տրվում է հանրապետության արդյունաբերության թողարկած արտադրանքի ատեստավորման կարգը:

Ըստ հաստատված մեթոդական ցուցումների, ձեռնարկությունների թողարկած ողջ արտադրանքը պետք է տրոհվի 3 կարգի՝ բարձր, առաջին և երկրորդ:

**Բարձր կարգի** արտադրանքը պետք է իր տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով համապատասխանի կամ գերազանցի հայրենական ու արտասահմանյան գիտության ու տեխնիկայի բարձրագույն նվաճումները: Այդ արտադրանքին սահմանված կարգով տրվում է պետական որականիշ:

**Առաջին կարգի** արտադրանքն իր տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով պետք է համապատասխանի գործող ստանդարտների և տեխնիկական պայմանների ժամանակակից պահանջներին:

**Երկրորդ կարգի** արտադրանքի տեխնիկա-տնտեսական ցուցանիշները չեն համապատասխանում ժամանակակից պահանջներին, բարոյապես հնացած են և ենթակա մոդեռնացման կամ արտադրությունից հանվելու:

Չնայած կան արդյունաբերական արտադրանքի որակի ատեստավորման միասնական սիստեմի ինչպես ընդհանուր, այնպես էլ ճյուղային դրույթներ, մեր հանրապետության պարենային ապրանքներ արտադրող ձեռնարկություններում չափազանց դանդաղ է ընթանում արտադրանքի որակի ատեստավորումը: Օրինակ, 1973 թ. հունվարի 1-ի տվյալներով ատեստավորվել են 31 նմուշի սննդարդյունաբերության և 30 նմուշի մսի-կաթնեղենի արդյունաբերության արտադրատեսակները, որոնք կազմում են այդ ճյուղերում թողարկվող արտադրանքի չնչին մասը (սննդարդյունաբերության արտադրանքի՝ 6, մսի-կաթի արդյունաբերության՝ 18 տոկոսը): Ըստ ատեստավորման արդյունքների, սննդարդյունաբերության ատեստավորված արտադրանքի 90,3 տոկոսը եղել է առաջին, 9,7-ը՝ երկրորդ կարգի: Ընթացիկ հնգամյակում նախատեսվում է սննդի, մսի-կաթի արդյունաբերության ձեռնարկություններում բարձր կարգի արտադրանքի տեսակարար կշիռը հասցնել մինչև 10 տոկոսի:

Բարձրորակ արտադրանքի թողարկման բնագավառում վճռական նշանակություն ունեն որակի բարելավման համար կիրառվող հիմնական գործոնների մշակումն ու իրականացումը ձեռնարկություններում, որոնք ընդգրկում են արտադրանքի պատրաստման բոլոր փուլերը, սկսած նախագծումից մինչև սպառումը։ Դրանց խնդիրն է նյութա-տեխնիկական, կազմակերպական և սոցիալ-տնտեսական անհրաժեշտ միջոցառումների հիման վրա հասնել տվյալ փուլում ժողովրդական տնտեսության, բնակչության և արտահանման պահանջներին համապատասխանող արտադրանքի թողարկմանը։ Որակի բարելավման նպատակով ենթադրվում է կիրառել վարչական, տնտեսական, սոցիալ-հոգեբանական, իրավական, տեխնիկական-տեխնոլոգիական մեթոդներ։ Ներկայումս Լվովի Լենինի անվան արտադրական տեխնիկական միավորումում, էլեկտրաչափիչ սարքերի և կինեսկոպների գործարաններում, Ռիբինսկի սարքաշինական գործարանում, Յարոսլավլի «Ավտոդիզել» և Լենինգրադի «Զվեզդա» միավորումներում առաջանորդվում են կառավարման այս նոր մեթոդով։ Այն կարող է և պետք է իր լայն կիրառումը գտնի համապատասխան ձեռնարկություններում։

Այսպիսով, հանրապետության պարենային ապրանքներ արտադրող ձեռնարկություններում ստեղծվել են տեխնիկա-տնտեսական անհրաժեշտ պայմաններ՝ արտադրանքի որակը բարձրացնելու և այն համապատասխանեցնելու սպառողների ժամանակակից պահանջներին։

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ՍՊԱՍԱՐԿՈՒՄԸ

**Լ. Ա. ԴԱՆԻԵԼՅԱՆ**
Աշխատավորների դեպուտատների Կիրովականի
քաղսովետի գործկոմի նախագահ

*Մեր երկրում բնակչության սպասարկման գործի օրինակելի կազմակերպումը սոցիալական լուրջ հարց է։ Չէ որ այն հնարավորություն է տալիս աշխատավորներին ավելի ռացիոնալ օգտագործելու իրենց ժամանակը, թեթևացնում ընտանիքի անդամների և առաջին հերթին կանանց առտնին հոգսերը, նպաստում քաղաքի և գյուղի միջև եղած էական տարբերության վերացմանը։*

*Լ. Ի. Բրեժնևը, անդրադառնալով մարդկանց հանդեպ սովետների ցուցաբերած հոգատարությանը, ասում է. «...սովետների աշխատողները հոգսեր շատ ունեն, բայց մարդկանց կարիքներին, այդ թվում նաև նրանց անձնական կարիքներին ցույց տրվող վերաբերմունքը բնավ էլ մանրուք չէ»* (Լենինյան կուրսով, *հ. 3, էջ 517). Նա նշում է, որ սովետական իշխանությունն այժմ ավելի շատ միջոցներ է հատկացնում այդ նպատակին։*

*Կյանքը ցույց է տալիս, որ մարդ որքան քիչ է զբաղվում կենցաղային հոգսերով, այնքան շատ ժամանակ է ունենում մտահոգվելու իր կուլտուրական մակարդակը բարձրացնելու, մտահորիզոնն ընդլայնելու, մասնագիտության մեջ կատարելագործվելու, նորարարությամբ զբաղվելու հարցերով։ Նա ավելի ակտիվորեն է մասնակցում հասարակական-քաղաքական աշխատանքներին, աճող սերնդի դաստիարակության խնդիրներին։*

*Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը մեծ ուշադրություն են նվիրում բնակչության սպասարկման ոլորտն ընդարձակելու և կատարելագործելու հարցերի լուծմանը։*

*ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ կուսակցության XXIV համագումարում ընդունված բանաձևում ասված է. «Համագումարը հատուկ նշանակություն է տալիս պարենային ու արդյունաբերական ապրանքների արտադրության ավելացմանը, կոմունալ և կենցաղային ծառայությունների ընդլայնմանը՝ այն հաշվով, որ ապահովվի բնակչության հարաճուն վճարունակ պահանջարկի բավարարումը, և անհրաժեշտ է համարում այդ նպատակներին հատկացնել առավել խոշոր կապիտալ ներդրումներ»* (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, *էջ 264).*

*Համագումարի որոշումների կենսագործման ասպարեզում զգալի գործ է արվել։ Կիրովականում, որն իր արդյունաբերական արտադրանքի ծավալով, բնակչության թվով Սովետական Հայաստանի երրորդ քաղաքն է, նախորդ հնգ-*

ամյակի վերջին տարվա համեմատությամբ արդյունաբերական արտադրանքը
աճել է 35,5 տոկոսով, բնակչությունը՝ 21 հազարով կամ 15,3 տոկոսով։ Ներ-
կայումս միայն արտադրության ոլորտում աշխատում է մոտ 31 հազար մարդ։

Քաղաքի աշխատավորությունն այդ նույն ժամանակամիջոցում ստացել է
ավելի քան 105 հազար քառակուսի մետր օգտակար մակերեսով բնակելի տա-
րածություն, կամ հարմարավետ բնակարաններ է ստացել շուրջ 2.500 ընտա-
նիք։ Մեկ աշխատողի միջին աշխատավարձը (չհաշված թոշակները, նպաստ-
ները և այլն) բարձրացել է 14 տոկոսով։ Պարզ է, որ բնակչության ռեալ եկա-
մուտների աճի հետ մեծանում են նաև գնողունակության պահանջարկը և
սպասարկման ծառայություններից օգտվելու հնարավորությունները։ Հետևա-
բար, քաղաքի կուսակցական կազմակերպությունը, աշխատավորների դեպու-
տատների քաղաքային սովետի գործադիր կոմիտեն է՛լ ավելի շատ պետք է
մտահոգվեն բնակչության կուլտուրական սպասարկման մակարդակը բարձ-
րացնելու հարցերով։

Ընթացիկ հնգամյակի երեքուկես տարում համապատասխան մինիստրու-
թյունները և Կիրովականի քաղսովետը կենցաղսպասարկման ձեռնարկու-
թյունների ընդարձակմանը հատկացրել են մոտ 800 հազար ռուբլի։ Քաղաքի
նորաստեղծ զանգվածներում բացվել են կենցաղսպասարկման 30-ից ավելի
տաղավարներ, որոնցում ծառայատեսակների թիվը 410 է։ Մի քանի տարի
առաջ մեր քաղաքի կանայք հնարավորություն չունեին օգտվելու լվացքատնե-
րի ծառայությունից։ Իսկ այժմ քաղաքի չորս լվացքատները օրական կատա-
րում են 2,2 տոննա լվացք՝ թե՛ բնակչության, թե՛ կազմակերպությունների և
ձեռնարկությունների համար։ Նման պահանջարկը, անշուշտ, բարձրորակ աշ-
խատանքի արդյունք է։ Գործկոմը նախատեսել է հետագայում ավելացնել
լվացքատների թիվը, հատկապես, ծայրամասերում։ Մինչև սեպտեմբերի վերջը
շահագործման կհանձնվի ևս մեկ լվացքատուն։

Ընդառաջելով աշխատավորների պահանջներին, ՀՍՍՀ բնակչության կեն-
ցաղսպասարկման մինիստրության օգնությամբ այս տարի ձեռք բերվեցին
քիմիական շտապ մաքրման սարքավորումներ։ Արդեն մեկ ամիս է, ինչ Կիրո-
վականի արևելյան մասում գործում է մաքրման արտադրամասը։ Քիմիական
մաքրման երկու ֆաբրիկաները ոչ միայն լիովին բավարարում են քա-
ղաքի բնակչության պահանջը, այլև իրենց ծառայություններն են առաջարկում
Գուգարքի, Սպիտակի, Ստեփանավանի, Կալինինոյի շրջանների աշխատավո-
րությանը։

Հետզհետե ընդլայնվում է ավտոմատ սպասարկումը։ Ավելի քան 2 հազար
ռուբլու արժողությամբ մեքենաներ են տեղադրվում ծառայական տարբեր ձեռ-
նարկություններում։ Ձեռք են բերվել կոշիկի ներբանը միակցող ինչպես մե-
խանիկական, այնպես էլ հիդրավլիկ մամլիչներ. մեկուկես անգամ բարձրացել
է աշխատանքի արտադրողականությունը, բարելավվել է արտադրանքի որակը։
ՀՍՍՀ բնակչության կենցաղսպասարկման մինիստրությունն անցյալ տարի
մեր կոշիկի անհատական պատվերների և նորոգման ֆաբրիկային թույլատրեց
թողարկել նրբագեղ կոշիկներ, որոնց պահանջարկը մեծ է։ Բարձրորակ արտա-
դրանքի շնորհիվ ֆաբրիկան հաջողությամբ է կատարում և գերակատարում
տրված առաջադրանքները։

Սպասարկման ոլորտի կարևոր ծառայություններից է տեխնիկական բարդ
սարքերի վերանորոգումը։ Հաճախ էր պատահում, որ լվացքի մեքենաները,
փոշեծծիչները, հատուկ փայլեցնող սարքերը տեղում նորոգելու հնարավորու-



թյուն չունենալու պատճառով բնակչությունը դժգոհում էր։ Այժմ այդ հարցն
արդեն լուծված է։ Քաղաքի բարդ տեխնիկայի նորոգման արհեստանոցը իր 12
բարձրորակ մասնագետներով սպասարկում է ոչ միայն կիրովականցիներին,
այլև Հայաստանի հյուսիսային և Սևանի ավազանի շրջաններին։ Նրանք կատա-
րում են բոլոր տեսակի սառնարանների երաշխավորված և ընթացիկ նորոգում-
ներ։ Տարեկան 305 հազար ռուբլու պլանային առաջադրանք և 350 հազար կա-
տարողական. այսպիսին են բարդ տեխնիկայի և մետաղյա իրերի պատրաստ-
ման ու նորոգման արտադրամասերի ցուցանիշները։

Կենցաղսպասարկման ոլորտում նյութատեխնիկական ապահովվածու-
թյունն անհրաժեշտ պայման է։ Մինչդեռ Կիրովականը հաճախ չի ապահովվում
անհրաժեշտ բազայով։ Կարևոր է և որակյալ նյութերի ստացումը։ Վերցնենք
մեր կարի անհատական պատվերների և նորոգման ֆաբրիկայի օրինակը։
Այսօր ամեն ոք, անկախ տարիքից, ցանկանում է գեղեցիկ ու ճաշակով հագ-
նվել։ Արդյոք, պակասո՞ւմ է կտորեղենը խանութներում կամ կարի տաղա-
վարներում։ Բնավ ոչ, սակայն որակը չի համապատասխանում արդի պա-
հանջներին։ Ուստի, սպառումը կատարվում է անբավարար, դանդաղում է շըր-
ջանառու միջոցների պտույտը, իջնում է ձեռնարկությունների շահութաբերու-
թյունը։ Ավելացնենք նաև որակյալ կարող մասնագետների պակասը, պարզ
կդառնան պլանը չկատարելու պատճառները։

Կյանքն անհրաժեշտաբար թելադրում է կենտրոնացնել կենցաղային ծա-
ռայակետերը. աստիճանաբար միավորվում են մանր կրպակները, ավելացվում
են կոմպլեքսային ընդունման կետերը։ Օրինակ, կենտրոնացվել են ժամագործ-
ների, կոշկակարների, ոսկերիչների արհեստանոցները։ Վերջերս Լենինի պողո-
տայի և 26 կոմիսարների անվան փողոցի խաչմերուկում բացվեց կենցաղային
իրերի պատվերների ընդունման «Ցուցադրական սրահը»։

Այս տարի շահագործման է հանձնվել Խնձորուտ թաղամասում կառուց-
ված կահույքի պատրաստման և նորոգման ֆաբրիկան, ուր նախատեսվում է
պատրաստել նաև դռներ, լուսամուտներ, բավարարել բնակարան կառուցող և
վերանորոգող անհատ պատվիրատուների պահանջը։ Նախագծվում է նաև վե-
րոհիշյալ ֆաբրիկայի համար տեղադրված երկու հզոր կաթսաները միաժամա-
նակ օգտագործել մասնավոր տնատերերին ջեռուցմամբ ապահովելու համար։
Դրանով կլուծվի ավելի քան 400 տնտեսության բնակարանների ջեռուցման
հարցը։ Սրա իրագործման համար մեզ անհրաժեշտ է, որ ՀՍՍՀ կենցաղսպա-
սարկման մինիստրությունը կենցաղկոմբինատներին ապահովի ջեռուցման
մարտկոցներով և համապատասխան խողովակներով։ Այդ նույն արտադրա-
մասում տեղադրված է բարձր արտադրողական սղոց, որն օգտագործվում է
ինչպես արտադրական, այնպես էլ անհատական պատվերները կատարելու
համար։

Լայն ծավալ է ստանում վարձութային ծառայությունը, որը նախորդ
հնգամյակի վերջին տարվա համեմատությամբ աճել է երկու անգամ։ Բնակ-
չությունը կենցաղսպասարկման գրեթե բոլոր իրերի՝ սառնարան, ամանեղեն,
դաշնամուր և այլն, մեծ պահանջարկ ունի։ Սակայն վարձութային խանութնե-
րում ապրանքների քանակությունն ու տեսականին շատ սահմանափակ է և
այսօրվա վիճակով չի գոհացնում բնակչությանը։ Անհրաժեշտ է, որ կենցաղ-
սպասարկման մինիստրությունը լրջորեն մտահոգվի քաղաքն անհրաժեշտ
ապրանքներով ապահովելու գործով։

Կիրովականում որոշակի գործ է անում նաև լճային տնտեսության վարչու-

թյունը, որը, հատկապես ամռան ամիսներին, ոչ միայն մտահոգված է պլան-
ների կատարմամբ, այլև քաղաքի լճակները և դրանք շրջապատող տարածքը
դարձնում է աշխատավորների հարմարավետ հանգստավայր։

Քաղաքի բաղնիքների վիճակը դեռևս անմխիթար է։ Կենտրո-
նական բաղնիքը վերակառուցվում է, իսկ երկրորդը՝ ենթակա է վերանորոգ-
ման։ ՀՍՍՀ կոմունալ տնտեսության մինիստրության ձեռնարկած միջոցառում-
ների շնորհիվ այժմ դրանցում շինարարական աշխատանքներ են կատարվում,
իսկ Ժդանով թաղամասում նախագծվում է կառուցել նորը։

Հեռուստացույցների, ռադիոընդունիչների և ձայնագրիչների հինգ արհես-
տանոցները պատկանում են ՀՍՍՀ ռադիոյի և հեռուստատեսության հաղոր-
դումների պետական կոմիտեի Կիրովականի մասնաճյուղին, որն ամեն տարի
կատարում է մոտ 90 հազար ռուբլու նորոգում։

Կիրովականցիների նյութական բարեկեցության աճի գործոններից մեկն էլ
անձնական օգտագործման մեքենաների ձեռքբերումն է։ Շուտով կսկսվի ավ-
տոտեխսպասարկման հզոր կարողության պրոֆիլակտորիումի կառուցումը։
Երեք տեղ է հատկացված կանգառների համար։ Գարաժների հարցը լուծելու
նպատակով քաղաքի տարբեր թաղամասերում առանձնացված է հողամաս՝
հազարից ավելի ավտոմեքենաների համար։ Նախատեսվում է նաև բակերում
ստորգետնյա կոոպերատիվ գարաժների կառուցում։ Հատուկ ուշադրություն է
հատկացվում ավտոպահեստամասերով ապահովելուն. օրերս բացվեց նոր խա-
նութ։

Այժմ չի կարող շահագործման հանձնվել բնակելի շենք առանց գազիֆի-
կացման։ Ընթացիկ հնգամյակի տարիներին բնական գազից սկսել են օգտվել
մասնավոր բնակարանների մոտ 60 տոկոսը։ Աշխատանքներ են կատարվում
այն 100 տոկոսի հասցնելու համար։ Չի անցնի երկար ժամանակ, և շինարար-
ները մեր համաքաղաքացիներին նոր ուրախություն կպատճառեն. ՋԷԿ-ի տաք
ջրերը կհասցվեն բնակարանները։

Անցյալ տարի յուրաքանչյուր կիրովականցու համար կատարվել է 18 ռ.
50 կ. կենցաղսպասարկման աշխատանք։ Այն, իհարկե, մեզ չի գոհացնում։
Մեր խնդիրն է՝ նոր ծառայատեսակների կիրառմամբ, արտադրանքի որակի
բարձրացմամբ, սպասարկման բարձր կուլտուրայով ավելի զարգացնել ծառա-
յությունների ոլորտը, դարձնել ավելի օպերատիվ։

Բնակչության սպասարկման գործի նկատմամբ կոմունիստական կուսակ-
ցության և սովետական կառավարության ցուցաբերած հոգատարության վառ
ապացույց է այն, որ եթե մեր քաղաքում հնգամյակի անցած երեքուկես տա-
րում արտադրաոլորտում զբաղված մարդկանց թիվն աճել է 1,5 տոկոսով,
ապա սպասարկման ոլորտում՝ 17 տոկոսով։

Անվիճելի է, որ բնակչության հարաճուն պահանջմունքները բավարարե-
լու և կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսված
կենցաղսպասարկման աշխատանքների ծավալի շեշտակի աճ ապահովելու հա-
մար առաջին հերթին պետք է արտադրական, գիտատեխնիկական բազա ստեղ-
ծել սպասարկման բոլոր ծառայությունների համար։ Անհրաժեշտ է մշակել
միացյալ հեռանկարային պլան-միջոցառումներ և դրանք կենսագործել մեր
հանրապետության ինչպես կենցաղսպասարկման մինիստրության, այնպես էլ
կոմունալ սպասարկման հետ առնչվող մյուս մինիստրությունների ու գերա-
տեսչությունների միջոցով։ Արդեն այս տարվա սեպտեմբերից Դիմաց թաղա-
մասում կսկսվեն կենցաղային սպասարկման տան շինարարական աշխատանք-



ները, որոնք կավարտվեն 1975 թվականին։ Այնտեղ կլինեն բոլոր տեսակի ծա-
ռայությունները՝ լվացքատուն, քիմմաքրում, կարի և կոշիկի պատվերների ու
նորոգման արհեստանոցներ, վարսավիրանոցներ և այլն։ 1975-ի կեսերին Մարք-
սի փողոցի վրա շահագործման հանձնվելիք բնակելի շենքի 50 քմ տարածու-
թյան բացվածքում կտեղծվեն 16 տեսակի ծառայողական արհեստանոցներ և
կենցաղային այլ կետեր։

ՀԿԿ Կիրովականի քաղկոմի բյուրոն և աշխատավորների դեպուտատների
քաղսովետի գործկոմը յուրաքանչյուր տարի, անհրաժեշտությունից ելնելով,
քննարկել են այն բազմաթիվ հարցերը, որոնք օգնել են սպասարկման ոլոր-
տում տեղ գտած թերությունները վերացնելուն, աշխատանքի որակը բարձրաց-
նելուն։ Իններորդ հնգամյակի անցած տարիներին սպասարկման հարցը երկու
անգամ լսվել է քաղսովետի սեսիայում, բազմիցս՝ գործկոմի նիստերում։ Քըն-
նարկումները ինքնանպատակ չեն եղել։ Դրանք օգնել են, որ քաղսովետի
գործկոմն ընդլայնի կենցաղային ծառայության ոլորտը, հատկացնի արտա-
դրական նոր տարածություններ, հետևի ոչ միայն դրանց արդյունավետ օգտա-
գործմանը, այլև կազմակերպված ծառայատեսակների տեղաբաշխման նպա-
տակահարմարությանը։

Քաղսովետի կենցաղսպասարկման վարչության բոլոր օբյեկտների կու-
սակցական, արհմիութենական կազմակերպությունների խնդիրն է օժան-
դակել սպասարկման կուլտուրայի և որակի բարձրացմանը, ավելացնել կա-
տարվող ծառայությունների ծավալը։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻՆ ԳՆԱՀԱՏԵԼ ՊՐԱԿՏԻԿ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ

Ս. Ս. ԶԱՔԱՐՅԱՆ
ՀԿԿ Սևանի շրջկոմի առաջին քարտուղար

Սևանն այսօր վեր է ածվել իսկական շինարարական հրապարակի: «Սևանշին» տրեստի կառուցողները շարունակում են իրենց հաղթարշավը: Անցյալ տարի նրանք գերակատարեցին շինմոնտաժային աշխատանքների պլանը, ընթացիկ տարվա առաջին եռամսյակում հաղթող ճանաչվեցին սոցմրցության մեջ և նվաճեցին ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի ու արդյունաբերության շինարարության մինիստրության փոխանցիկ կարմիր դրոշը և դրամական առաջին կարգի մրցանակը: Հաջողությունները, առաջին հերթին, բացատրվում են նրանով, որ տրեստի կառավարիչ, տեխնիկական գիտությունների թեկնածու Գ. Իսախանյանը լավ է հասկանում շինարարության գործերը, հմտորեն մոբիլիզացնում կառուցողների ուժերը, հաշվենկատորեն ղեկավարում իրեն վստահված կազմակերպության գործունեությունը:

Սևանի կուսշրջկոմը շինարարության փորձառու ղեկավարին վերաբերվում է վստահությամբ, միաժամանակ նրա հանդեպ ցուցաբերում մեծ պահանջկոտություն: Հաշվի առնելով Գ. Իսախանյանի պրակտիկ գործունեությունը՝ մենք մեծ հույսեր ենք կապում նրա հետ, հավատում նրան:

Հավատալ, վստահել կադրերին, հենվել նրանց վրա, նրանց ամենաակտիվ մասնակցությամբ լուծել տնտեսական բարդ խնդիրները— ահա կուսակցության պահանջը կադրերի հետ տարվող աշխատանքում: Բնականոն է, որ կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները գործունեության ուղեցույց են ընդունում ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևի արտահայտած այն շատ կարևոր միտքը, որ՝ «Այժմ մեզանում կադրերի հետ կատարվող աշխատանքում հաստատվել է այնպիսի պրակտիկա, երբ մարդկանց նկատմամբ վստահությունն ու հարգանքը զուգորդվում են նրանց նկատմամբ սկզբունքային պահանջկոտության հետ: Այս ամենը գործարար, ընկերական մթնոլորտ է ստեղծում, աշխատողներին թույլ է տալիս ավելի լրիվ դրսևորել իրենց ընդունակությունները» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 132):

Կիրառելով կուսակցության առաջադրած այս կարևոր սկզբունքը, մենք ամեն կերպ բարձրացնում ենք կոմունիստների, ղեկավար կադրերի պատասխանատվությունը, նրանց գնահատում իրենց գործունեության արդյունքով, ղեկավարած օղակի գործերի իրական վիճակով: Եվ դրանով պետք է բացատրել, որ «Սևանշին» տրեստի կառավարիչ Գ. Իսախանյանի օրինակը եզակի չէ: Այսօր մեր արդյունաբերական ձեռնարկությունների, հիմնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների և նրանց արտադրական օղակների շատ ղեկավարներ դրսևորում են բարձր կազմակերպվածություն, իրենց վստահված տեղամասերի գործերը ճիշտ վարելու մեծ հմտություն: Նրանք իրենց



բարեխղճությամբ ու սրտացավությամբ օրինակ են ծառայում կոլեկտիվի ան-
դամներին, նրանց տանում իրենց ետևից:
Կուսակցության անդամը պարտավոր է աշխատանքի նկատմամբ դրսևորել
կոմունիստական վերաբերմունք, հանդես գալ որպես նորի ու առաջադիմա-
կանի նախաձեռնող, առաջավոր փորձի պաշտպանող ու տարածող: Այդպես է
պահանջում ՍՄԿԿ կանոնադրությունը: Կոմունիստներին, հատկապես երիտա-
սարդներին այդ պահանջների կատարման ոգով է դաստիարակում Սևանի գոր-
ծադիր սարքերի գործարանի կուսկազմակերպությունը (քարտուղար՝ Ժ. Գրի-
գորյան): Գործընկերներին անձնական լավ օրինակ է տալիս հավաքման ար-
տադրամասի էլեկտրափականագործ Արաքսյա Հախինյանը, որը 1962 թվակա-
նից սկսած իր բախտը կապել է գործարանի հետ: Նա արդեն արտադրանք է
թողարկում հնգամյակի վերջին տարվա հաշվին: Ա. Հախինյանի հայրենանվեր
ու անբասիր աշխատանքը գնահատվեց ըստ արժանվույն. նախորդ նստաշրը-
ջանում նա Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ էր:
Ձեռնարկությունում յուրաքանչյուր հինգերորդ աշխատողը ռացիոնալիզա-
տոր է: Արտադրության մեջ ռացիոնալիզատորական առաջարկությունների
ներդրումից ամեն տարի ստացվում է ավելի քան 60 հազար ռուբլու պայմա-
նական օգուտ, տնտեսվում մեծ քանակությամբ սև ու գունավոր մետաղ:
Ճանաչված ռացիոնալիզատորներից է մեխանիկական արտադրամասի
խառատ Ն. Մխիթարյանը, որն այստեղ է եկել միջնակարգն ավարտելուց հե-
տո, ձեռնարկության հիմնադրման օրվանից՝ 1958 թվականից: Նա միշտ էլ
քայլում է առաջավորների շարքում, անձնական օրինակով շրջապատի մարդ-
կանց համակում իրենց ուժերի նկատմամբ վստահությամբ ու հավատով: Ն.
Մխիթարյանին է վստահված նոր յուրացվող սարքերի ու դետալների մշակման
ու պատրաստման պատասխանատու գործը, որը նա կատարում է մեծ հմտու-
թյամբ: Նրանից անչափ գոհ են կոնստրուկտորներն ու ողջ կոլեկտիվը: Հնգ-
ամյակի վճռական տարում ծավալված սոցմրցությունում լավագույն ցուցա-
նիշների հասնելու համար նա պարգևատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի
շքանշանով: Գործարանի կոմունիստներն իրենց հաշվետու-ընտրական ժողո-
վում Մխիթարյանին միահամուռ առաջադրեցին շրջանային կուսկազմակեր-
պության XXVI կոնֆերանսի պատգամավոր, որտեղ նա ընտրվեց շրջկոմի
բյուրոյի անդամ:
Գործարանի վետերաններից են արտադրության առաջավորներ, ՍՄԿԿ ան-
դամներ, ամուսիններ Գոհար և Բենիկ Մարգարյանները: Բենիկը, այսպես ա-
սած, շրջանի № 1 խառատն է. անցած տարի նա մասնակցեց խառատների հան-
րապետական մրցույթին և, բարձր վարպետության ու հմտության համար, պար-
գևատրվեց արտասահմանյան տուրիստական ուղեգրով և ձեռքի ժամացույցով:
Կոմունիստներն իրենց ակտիվ գործունեությամբ նպաստում են կուսկազ-
մակերպությունների մարտունակության բարձրացմանը, հիմնարկ-ձեռնարկու-
թյունների, տնտեսությունների առջև ծառացած խնդիրների լուծմանը: Առաջա-
վոր կուսկազմակերպությունները, նրանց բյուրոները, իրենց հերթին, նպաստավոր
պայմաններ են ստեղծում կոմունիստների ակտիվությունն ու նախա-
ձեռնությունը զարգացնելու համար:
Իր մարտունակությամբ, կոմունիստների նկատմամբ ցուցաբերվող պա-
հանջկոտությամբ աչքի է ընկնում Լճաշենի սովխոզի սկզբնական կուսկազմա-
կերպությունը (բյուրոյի քարտուղար՝ Պ. Ղազարյան), որի անդամների գրեթե
60 տոկոսն աշխատում է հանրային արտադրության տարբեր ճյուղերում, ա-
պահովում ավանգարդային դերը: Կուսբյուրոն ջանում է, որ կադրերը, կոմու-
նիստները գործիմացորեն վարեն իրենց վստահված բնագավառը, որի հաջո-
ղությունը պայմանավորվում է նրանց ակտիվության ու նախաձեռնության
աճով:
Անցյալ տարվա առաջին եռամսյակի արդյունքների ամփոփումից պարզ-
վեց, որ սովխոզի թռչնաբուծական ֆերմայում թերակատարվում են պետա-
կան առաջադրանքները, բարձր է ձվի ինքնարժեքը: Կուսբյուրոն ֆերմայի
հարցը քննարկեց հերթական ժողովում, ելույթ ունեցան մի շարք կոմունիստ-

կատարելու համար։ Այդ են վկայում առաջին կիսամյակի արդյունքները։ Արդյունաբերության աշխատողներն արտադրանքի իրացման առաջին կիսամյակի պլանը կատարեցին 105,9, համախառն արտադրանքինը՝ 107,7 տոկոսով։ Նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ արտադրության ծավալի աճը կազմեց 17,2 տոկոս, «Սևանշին» տրեստի կառուցողները շինմոնտաժային աշխատանքների պլանը կատարեցին 101,1 տոկոսով, շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները մայիսի 16-ի դրությամբ զգալիորեն գերակատարեցին պետությանը անասնապահական մթերքներ վաճառելու կիսամյա առաջադրանքները, սեղմ ժամկետում ավարտեցին գյուղատնտեսական կուլտուրաների մշակությունը, հաջողությամբ առաջ են տանում բերքահավաքի և կերի կուտակման աշխատանքները։

Շրջանի առջև ծառացած քաղաքական ու տնտեսական խնդիրների լուծման համար մղվող պայքարի ավանգարդում են կոմունիստները։ Նրանք ոչ մի ջանք չեն խնայում արտադրության ծավալի ավելացման, արտադրական կարողությունների արդյունավետ օգտագործման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման և կուսակցության կանխագծումների իրագործման համար։ Լինել հնգամյակի առաջավոր բնագծում, անձնական օրինակով վարակել աշխատանքային ընկերներին— սա է յուրաքանչյուր կոմունիստի բարձրագույն նպատակը։

---

# ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՍՈՑՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

Ռ. Գ. ՍԱՐԳՍՅԱՆ

Լենինականի Մայիսյան ապստամբության անվան Աշխատանքային կար-
միր դրոշի և Ժողովուրդների բարեկամության շքանշանակիր տեքստիլ կոմբի-
նատը հանրապետության թեթև արդյունաբերության առաջնեկներից է։ Նրա
հիմնադրման 50-ամյակը հանդիսավոր պայմաններում նշվում է ընթացիկ
տարվա սեպտեմբերի 21-ին։ Եվ անցած ամբողջ կես դարում սոցիալիստական
մրցությունը եղել և մնում է որպես տեքստիլագործների ստեղծագործական
նախաձեռնությունը զարգացնելու արդյունավետ միջոց։
«Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մա-
սին» ՍՄԿԿ Կենտկոմի 1971 թվականի որոշման մեջ նշված է. «Սոցիալիստա-
կան մրցության գլխավոր ուղղությունը պետք է լինի աշխատավորների մոբի-
լիզացումը աշխատանքի արտադրողականության և հանրային արտադրության
արդյունավետության ըստ ամենայնի բարձրացման համար, աշխատանքային
ծախսումների նվազեցման, հումքային և նյութական ռեսուրսների ռացիոնալ
օգտագործման ու տնտեսման, արտադրանքի որակի բարձրացման, արտա-
դրական ֆոնդերի և կապիտալ ներդրումների լավագույն օգտագործման հա-
մար» (Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման
մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, Երևան, ՀԿԿ Կենտկոմի հրատ., 1971, էջ 7)։
Կոմբինատի կուսկազմակերպությունը և նրա կոմիտեն, ելնելով սոցմրցության
կազմակերպման մասին ՍՄԿԿ XXIV համագումարի և Կենտկոմի սույն որոշ-
ման պահանջներից, մրցությունը ծառայեցնում են հանրային արտադրության
արդյունավետության բարձրացմանը։

***

Լայնորեն ծավալելով սոցմրցությունը՝ տեքստիլագործները հնգամյակի
վճռական տարին փակեցին արտադրական բարձր ցուցանիշներով։ Դրա համար
կոլեկտիվը չորս եռամսյակ անընդմեջ նվաճեց հանրապետության թեթև ար-
դյունաբերության մինիստրության և ճյուղային արհմիության հանրապետա-
կան կոմիտեի փոխանցիկ կարմիր դրոշը, արժանացավ Հայաստանի կոմկուսի
Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի կարմիր
դրոշին։ Պետական առաջադրանքները և ստանձնած սոցիալիստական պարտա-
վորությունները կատարելու գործում ձեռք բերած նշանակալի հաջողություն-
ների համար 56 տեքստիլագործներ արժանացան կառավարական պարգևների՝
շքանշանների ու մեդալների, 160-ը՝ պարգևատրվեցին «1973 թվականի սոց-
մրցության հաղթողին» կրծքանշանով, 23 առաջավորների և 14 կոլեկտիվների
հանձնվեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Հանրապետության Մինիստր-
ների սովետի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրեր և դրամական պարգև,
86 տեքստիլագործների անուններ գրանցվեցին կոմբինատի պատվոգրքում։

***

Կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դի-
մումը է՛լ ավելի բորբոքեց մրցությունը կոմբինատի բոլոր օղակներում։ Այս
խոշոր ձեռնարկության բազմահազարանոց կոլեկտիվը դիմումն ընդունեց քա-
ղաքական և աշխատանքային ակտիվության վերելքի պայմաններում։
Հունվարի 11-ին կուսկոմիտեն իր ընդլայնված նիստում, որին հրավիրվել

էին ֆաբրիկաների ու բաժինների կուսակցական, արհմիութենական, կոմերի-
տական ակտիվիստները, տնտեսական ղեկավարները, ժողովրդական վերահըս-
կողության խմբերի նախագահները, քննարկեց «Կոմբինատի կուսկազմակեր-
պության անելիքները կուսակցության, սովետական ժողովրդին ուղղված
ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի կենսագործման ասպարեզում» հարցը: Կուսկոմիտեն
պարտավորեցրեց սկզբնական կուսկազմակերպություններին՝ քաղինֆորմա-
տորների, ագիտատորների ու պրոպագանդիստների միջոցով մասսայականաց-
նել ՍՄԿԿ Կենտկոմի 1973 թ. դեկտեմբերյան պլենումի որոշումները և կուսակ-
ցությանն ու սովետական ժողովրդին ուղղված դիմումը: Միացյալ արհկոմին և
արհմիութենական կազմակերպություններին հանձնարարվեց, որոշիչ տարվա
պլանների կատարումն ու գերակատարումն ապահովելու համար, սոցիալիս-
տական լայն մրցություն ծավալել անհատ բանվորների, բրիգադաների, արտա-
դրամասերի, ֆաբրիկաների միջև՝ հատուկ ուշադրություն նվիրելով աշխատա-
վորների նախաձեռնության զարգացմանը: Միացյալ արհկոմից պահանջվեց՝
ամենօրյա հսկողություն սահմանել սոցպարտավորությունների կատարման
նպատակով մշակված միջոցառումների կենսագործման, աշխատան-
քային պայմանների բարելավման, հումքի և սարքավորումների ռացիո-
նալ օգտագործման նկատմամբ, ստեղծել անհատական պարտավորություննե-
րի ամփոփման անձնական գրքույկներ:
Կոմբինատի կոմերիտական կազմակերպությանն ու նրա կոմիտեին հանձ-
նարարվեց՝ ստեղծել կոմերիտական բրիգադաներ, աշխատամասեր և մշակել
նրանց մրցության պայմանները:
Հաշվի առնելով ներքին ռեզերվները՝ տեքստիլագործներն ստանձնեցին
սոցիալիստական բարձր պարտավորություններ և խոստացան 1974 թ. պետա-
կան առաջադրանքները կատարել ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 26-ին, լրա-
ցուցիչ իրացնել մեկ մլն 400 հազար ռուբլու արտադրանք, որից մեկ մլն 200
հազարը՝ հանդիպական պլանով, արտապլանային կարգով թողարկել 50 տոն-
նա մանվածք, 300 հազար մետր գործվածք, աշխատանքի արտադրողականու-
թյունը բարձրացնել 2 տոկոսով: Մրցությամբ նախատեսվեց մասսայական
պայքար ծավալել արտադրանքի որակի բարելավման համար. առաջին տեսա-
կի արտադրանքի քանակը հասցնել 90,1 տոկոսի, թողարկել ժամանակակից
ձևավորմամբ 65 նմուշի գործվածք: Տեքստիլագործները պատրաստակա-
մություն հայտնեցին հումքի, էլեկտրաէներգիայի, վառելանյութի, օժանդակ
նյութերի խնայողության և ներքին ռեզերվների արդյունավետ օգտագործման
միջոցով տնտեսել 150 հազար ռուբլի, 75 տոննա բամբակ և դրա հաշվին աշ-
խատել 3 օր, կենսագործել տեխնիկական առաջընթացի միջոցառումները,
տարվա ընթացքում տեղադրել 240 միավոր տեխնոլոգիական նոր սարքավո-
րումներ:
Մշակվեց և կուսկոմիտեի քննարկմանը ներկայացվեց նյութական ու
բարոյական խթանման միջոցառումների ծրագիր, ամենօրյա հսկողություն
սահմանվեց մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման նը-
կատմամբ: Մրցությունը ծավալվեց «Տալ ավելի շատ և լավորակ արտադրանք,
ավելի նվազ ծախսումներով» նշանաբանով:
Հունվարի 30-ին կոմբինատի կուսկոմիտեն քննության առավ «Միջոցա-
ռումներ «1974 թվականի ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կա-
տարելու համար արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի աշ-
խատողների համամիութենական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ
Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի
որոշման կատարման համար» հարցը: Ֆաբրիկաների և բաժինների կուսակցա-
կան, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին, տնտեսա-
կան ղեկավարներին հանձնարարվեց կոնկրետ միջոցներ ձեռնարկել կուսակ-
ցության ու կառավարության համատեղ որոշումը կենսագործելու, ստանձնած
պարտավորություններն ու հանդիպական պլանները անթերի կատարելու հա-
մար: Կուսկոմիտեն որոշեց ուժի մեջ թողնել ֆաբրիկաների և օժանդակ բա-
ժինների փոխանցիկ կարմիր դրոշներն ու դրամական մրցանակները, միջար-
տադրամասային, միջհերթափոխային, միջբրիգադային և անհատական մրցու-



թյան հաղթողների համար սահմանեց պարգևներ, խրախուսական մրցա-
նակներ:
Հաշվի առնելով սոցմրցության կարևորությունը, ինչպես ֆաբրիկաների ու
բաժինների կուսկազմակերպություններն ու նրանց բյուրոները, այնպես էլ
կուսկոմիտեն պարբերաբար անդրադառնում են դրա կազմակերպման հարցե-
րին: Մարտ ամսին, օրինակ, կուսկոմիտեն իր հերթական նիստում քննարկեց
որոշիչ տարվա առաջին երկու ամիսների, իսկ ապրիլի 26-ին ամփոփեց առա-
ջին եռամսյակի աշխատանքի արդյունքները: Բարձր ցուցանիշների համար
կոմբինատի կոլեկտիվը նորից նվաճեց հանրապետության թեթև արդյունաբե-
րության մինիստրության և ճյուղային արհմիության հանրապետական կոմի-
տեի փոխանցիկ դրոշը: Կուսկոմիտեն հուլիսի կեսերին հանրագումարի բերեց
առաջին կիսամյակի և երկրորդ եռամսյակի արդյունքները, որոնք նույնպես
գոհացուցիչ էին:
Կոմբինատում ծավալված սոցիալիստական մրցության մեջ հատկանշա-
կանն այն է, որ յուրաքանչյուր ֆաբրիկա, բաժին, արտադրամաս, բրիգադա,
առանձին աշխատող պայքարում է ստանձնած պարտավորությունները
կատարելու, արտադրական բարձր ցուցանիշների հասնելու համար: Իսկ դրա
գլխավոր ուղին եղած ռեզերվների ու հնարավորությունների պատշաճ օգտա-
գործումն է: Այդ նպատակով այստեղ կիրառում են զանազան միջոցներ:
Դրանցից մեկը սոցպարտավորությունների կատարման նկատմամբ հասարա-
կական վերահսկողության իրականացումն է: Ֆաբրիկաներին ու բաժիններին
անհրաժեշտ օգնություն ցույց տալու նպատակով կոմբինատում ստեղծվել է
սոցմրցության կազմակերպման և աշխատանքի գիտական կազմակերպման
նոր բաժին, որի վարիչն է տնտեսագետ Ջեմմա Մանուկյանը: Այս բաժինն է
զբաղվում սոցմրցության կազմակերպման և խրախուսանքի միջոցառումների
իրականացման գործով: Կուսկազմակերպությանը կից ստեղծվել է սոցմրցու-
թյան կազմակերպման հանձնաժողով, որում ընդգրկված են կուսակ-
ցական, արհմիութենական, կոմերիտական ակտիվիստներ, առաջավոր բան-
վորներ, մասնագետներ: Հանձնաժողովի գործունեությունը չի սահմանափակ-
վում սոսկ արդյունքների ամփոփմամբ: Նա պարբերաբար ստուգում է տեխնո-
լոգիական պրոցեսների ճիշտ և ժամանակին կատարումը, տեխնիկայի արդյու-
նավետ օգտագործումը, ընդհանրացնում և տարածում աշխատանքի առաջավոր
փորձը: Մրցության արդյունքների ամփոփումը կատարվում է յուրաքանչյուր
ամիս:
Կուսկոմիտեի բյուրոների նիստերում և կուսժողովներում արդեն ավան-
դույթ են դարձել արտադրության զարգացման հետ կապված կենսական հար-
ցերի, սոցիալիստական մրցության արդյունքների քննարկումները: Արտադրու-
թյան ոլորտում բացահայտված յուրաքանչյուր թերություն քննարկման առար-
կա է դառնում կուսժողովներում: Կոլեկտիվ կերպով լուծվում են ծագած դըժ-
վարությունները, մոբիլիզացվում տեքստիլագործների ուժերը՝ ստանձնած
պարտավորությունների կատարման համար:
Մրցության կազմակերպման ներկա փուլի գլխավոր առանձնահատկու-
թյուններն են՝ զանգվածայնությունը, ձևերի բազմազանությունը, նպատակա-
ուղղվածությունը: Կոմբինատում մրցության բոլոր ձևերի մեջ ընդգրկված են
3.512 բանվորներ, որոնցից 3.018-ը հաջողությամբ են կատարում ստանձնած
սոցիալիստական պարտավորությունները:
Կոմբինատում սոցիալիստական մրցությունը բազմաբնույթ է: Այստեղ
կիրառվում են զանազան ձևեր: Սոցմրցությանը կոլեկտիվի անդամների
մասնակցության արդյունավետ ձևեր են տարբեր մասնագիտությունների ստու-
գատես-մրցույթները: Անցկացվում են բանվորական վարպետության 48 տե-
սակի ստուգատես-մրցույթներ: Աշխատանքային գործողությունների ճիշտ և
արագ կատարման, ամենամեծ լցվածքով մանվածքի թողարկման, փաթաթող-
ների, հենողների, օսլայողների, սնրողների բանվորական վարպետության
բարձրացման և այլ տիպի մրցույթներին միայն ընթացիկ տարվա առաջին կի-
սամյակին մասնակցեցին 2.060 բանվորներ, որոնցից 150-ը հաղթող ճանաչ-
վեցին և պարգևատրվեցին պատվոգրերով, վկայականներով և դրամով:

Ֆաբրիկաներում լայն մասսայականություն է վայելում «Լավագույնը՝ մասնագիտությունում» ստուգատես-մրցույթը, որի հաղթողները ևս պարգևատրվում են։

Ամենամյա մրցույթներ են հայտարարված հնագույն և բազմափորձ տեքստիլագործների պատվին։ Լավ ընդունելություն են գտել մանածագործուհի, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Ֆլորա Մխիթարյանին, ջուլհակուհի, սոցիալիստական աշխատանքի հերոս Աստղիկ Պետրոսյանին, Հայրենական պատերազմում զոհված ենթավարպետ Հովհաննես Գրիգորյանին նվիրված մրցույթները։ Հաղթողներն արժանանում են դրամական խրախուսանքի։ Նրանց լուսանկարները փակցվում են կոմբինատի և ֆաբրիկաների պատվո տախտակներին, անունները գրանցվում են պատվոգրքում, նրանց մասին գրվում է «Տեքստիլագործ» բազմատպաքանակ թերթում։ Լավագույններին տրվում են առողջարանների, հանգստյան տների և արտասահմանյան տուրիստական շրջագայության ուղեգրեր։

Առաջնորդվելով Վ. Ի. Լենինի այն հայտնի ցուցումով, որ պետք է ապահովել մրցության հրապարակայնությունը, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները հաղթող կոլեկտիվներին և անհատներին պարգևները հանձնում են աշխատավորների ժողովներում և հավաքներում, հանդիսավոր պայմաններում։ Նրանք մրցության արդյունքները հրապարակում են ի ցույց ամենքի, մասսայականացնում ժողովներում, արտադրական խորհրդակցություններում։

Լայն ծավալ է ստացել մրցության բարձրագույն ձևը՝ աշխատանքի նրկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը։ Դրան մասնակցող բանվորներից 1.824-ն արժանացել են «Կոմունիստական աշխատանքի հարվածային» կոչման։ Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչում է տրվել 53 բրիգադայի։ Այժմ կոմբինատի 2 ֆաբրիկա, մեկ բաժին, 3 արտադրամաս, 206 բրիգադա պայքարում են այդ կոչման համար։

Կոմունիստական աշխատանքի շարժման, սոցմրցության ընթացքում կոմբինատում ծնվում են հայրենասիրական նոր նախաձեռնություններ, որոնք մեծապես նպաստում են հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Այդ պրոցեսը հատկանշական է հատկապես գործվածքային ֆաբրիկային։ Այստեղ «Հնգամյակը 3 տարի 9 ամսում» նախաձեռնության հեղինակ դարձավ երիտասարդ կոմունիստ, ենթավարպետ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Մ. Ստեփանյանը։ Այդ նախաձեռնությունը պաշտպանվեց կուսկոմիտեի կողմից և տարածվեց բոլոր արտադրամասերում։ Վճռական տարվա արդյունքներով կոմունիստական աշխատանքի կոչման արժանացած Մ. Ստեփանյանի բրիգադան հաղթող ճանաչվեց ՍՍՀՄ թեթև արդյունաբերության մինիստրության հայտարարած «Արտադրության արդյունավետության բարձրացման համար» մրցույթում, պարգևատրվեց պատվավոր դիպլոմով, իսկ բրիգադավարը՝ առողջարանի անվճար ուղեգրով։ Նրա հետևորդների թիվը կոմբինատում հասնում է 980-ի։

Ուշագրավ է կոմունիստ ենթավարպետ, «Պատվո նշան»-ի շքանշանակիր Գ. Թորոսյանի «Թողարկել միայն գերազանց որակի արտադրանք» նախաձեռնությունը։ Նա խոստացավ առաջին տեսակի արտադրանքի քանակը, նախատեսված 88,5-ի փոխարեն, հասցնել 99 տոկոսի՝ առանց կրճատելու սպասարկման գոտին և նվազեցնելու սարքավորումների արտադրողականությունը։ Նախաձեռնությունը հավանության արժանացավ ֆաբրիկայի կուսբյուրոյի կողմից, իսկ այնուհետև քննարկվեց կոմբինատի կուսկոմիտեում։ Որոշվեց այն լայնորեն արմատավորել արտադրական բոլոր օղակներում։ Ֆաբրիկաների կուսակցական, արհմիութենական կազմակերպություններին, տնտեսական ղեկավարներին հանձնարարվեց ուսումնասիրել և բանվորների շրջանում տարածել Գ. Թորոսյանի աշխատանքի փորձը, ամեն կերպ ջանալ, որ այն դառնա կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի սեփականությունը։ Կուսկոմիտեի որոշումից հետո լայն շարժում սկսվեց գերազանց որակի արտադրանքի թողարկման համար։ Այժմ Գ. Թորոսյանը կոմբինատում 920 հետևորդ ունի։

Կուսակցության քաղկոմի բյուրոն ևս քննարկեց ու հավանություն տվեց



կոմունիստ Գ. Թորոսյանի նախաձեռնությանը։ Հանձնարարվեց քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կուսակցական, տնտեսական ղեկավարներին՝ քննարկել և պաշտպանել առաջավոր ենթավարպետի նախաձեռնությունը, որը կնպաստի 1974 թվականի և ամբողջությամբ վերցրած հնգամյակի առաջադրանքների ժամկետից շուտ կատարմանը, բարձրորակ արտադրանքի թողարկմանը։ Այժմ քաղաքի տասնյակ ձեռնարկությունների հազարավոր բանվորներ աշխատում են նրա օրինակով և թողարկում միայն գերազանց որակի արտադրանք։

Հնգամյակի որոշիչ տարվա նախաշեմին ֆաբրիկայի մի խումբ արտադրության առաջավորներ՝ կոմունիստ ենթավարպետներ Վ. Մնոյանը, Գ. Սարգըսյանը, ջուլհակուհի Լալա Դավթյանը և անկուսակցական, ենթավարպետ Վ. Մուրադյանը հանդես եկան «Յուրաքանչյուր հաստոցից ժամում կես մետրից ավելի արտադրանք թողարկելու» նախաձեռնությամբ։ Նրանք սարքավորումների արտադրողականությունը հասցրել են մինչև 13 հազար միջնաթել-ժամի, որը զգալիորեն գերազանցում է միութենական միջին ցուցանիշը։ Այդ նախաձեռնությունն արժանացավ ֆաբրիկայի կուսբյուրոյի ուշադրությանը և տարածվեց գործամասերում։ Կուսկոմիտեն ևս քննարկեց ու հավանություն տվեց դրան։ Նիստին հրավիրվել էին նախաձեռնության հեղինակները, արտադրության առաջավորներ, ֆաբրիկաների կուսակցական-տնտեսական ղեկավարներ։ Որոշվեց այն լայնորեն արմատավորել արտադրական օղակներում։

Հանձնարարվեց կոմբինատի տնտեսական ղեկավարությանը, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին՝ լայնորեն աջակցել «Յուրաքանչյուր հաստոցից՝ ժամում կես մետրից ավելի արտադրանք» նախաձեռնության հեղինակներին՝ այդ շարժումն ուղղելու հնգամյակի որոշիչ և եզրափակիչ տարիների պետական առաջադրանքների ժամկետից շուտ ու բարձր ցուցանիշներով կատարմանը։ Նախաձեռնությունն արդեն «կանաչ ճանապարհ» է ստացել և հաջողությամբ կիրառվում է, հետևորդների թիվը հասնում է մի քանի հարյուր մարդու։

Կարևոր նշանակություն ունի մրցության համեմատությունը։ Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ առանց իմանալու, թե հարևան արտադրամասում, նույնանման գործարանում և ամբողջ ճյուղի մասշտաբով ինչպիսի արդյունքներ են ձեռք բերվել, մրցությունը չի կարող ցանկալի արդյունքներ տալ։ Մրցության արդյունավետությունը բարձրանում է այն դեպքում, երբ համեմատվում են ոչ միայն պարտավորությունները և դրանց կատարման տոկոսները, այլև արտադրության բնույթով միանման կոլեկտիվների տնտեսական գործունեության փաստացի ցուցանիշները։ Լենինականի տեքստիլագործները երկար տարիներ բարեկամական կապերի մեջ են Իվանովոյի մարզի Վիչուգա քաղաքի Ն. Նոգինի անվան մանվածքա-գործվածքային, Խարկովի կարի և Լենինականի Ս. Լուկաշինի անվան մանվածքային ֆաբրիկաների, Կիրովաբադի տեքստիլ կոմբինատի, Քութայիսիի մետաքսի միավորման, Կլիմովի տեքստիլ մեքենաշինական գործարանի կոլեկտիվների հետ։ Նրանք պարբերաբար պատվիրակություններ են ուղարկում մրցակիցների մոտ, պայմաններ ստեղծում փոխայցելությունների համար, նամակագրական կապ հաստատում նրանց հետ։ Յուրաքանչյուր եռամսյակ մրցության արդյունքներն ուղարկվում են մրցակիցներին, համեմատվում, կատարվում փորձի փոխանակում։

Այս բոլոր միջոցառումներն օգնում են հայ տեքստիլագործներին՝ ժամկետից շուտ կատարելու պետական առաջադրանքներն ու ստանձնած պարտավորությունները։ Տարվա համար նախատեսված մեկ միլիոն 200 հազար ռուբլու հանդիպական պլանը կոմբինատի մարդիկ կատարեցին հինգ ամսում, ընդունեցին ևս մեկ միլիոն 300 հազար ռուբլու հանդիպական պլան։ Նրանք ընթացիկ տարվա առաջին կիսամյակում պլանից դուրս երկրին տվեցին մեկ մլն 629 հազար ռուբլու պատրաստի արտադրանք, պլանի համեմատությամբ աշխատանքի արտադրողականությունը բարձրացրին 3,3 տոկոսով, ինքնարժեքի իջեցման միջոցով ստացան 554 հազար ռուբլու օգուտ, տնտեսած նյութերի հաշվին լրացուցիչ թողարկեցին 382 հազար ռուբլու գործվածք։

# ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻՆ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

**Հ. Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ**
Պաշտոնաթող գեներալ-մայոր

Վ. Ի. Լենինի՝ որպես ռազմական գործողությունների ղեկավարի, հանճարը փայլուն կերպով դրսևորվեց դեռ Հոկտեմբերյան զինված ապստամբության օրերին: Ապստամբության ակտիվ մասնակիցներից Մեխանոշինն իր հուշերում գրում է. «Նա այն կենտրոնն էր, որի մոտ էին հավաքվում տեղերից ստացվող բոլոր զեկուցագրերը. նա շարունակ հասցնում էր ժամանակին տալ իր խիստ արժեքավոր ու ստույգ ցուցումները, ճիշտ պահին նկատում էր այս կամ այն կողմից սպառնացող վտանգը:

Ընկեր Լենինը Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության բոլոր զինված ուժերի իսկական գլխավոր հրամանատարն էր» (В. И. Ленин— вождь Октября. Воспоминания питерских рабочих. Лениздат, 1956, стр. 191).

1918—1921 թվականներին կուսակցության Կենտկոմը, պատերազմի ղեկավարման այլ հարցերի հետ միաժամանակ, քննարկում էր Լենինի մշակած ստրատեգիական պլանները: Վլադիմիր Իլյիչն ամենօրյա կապ էր պահպանում հանրապետության ռազմա-հեղափոխական խորհրդի, գլխավոր հրամանատարության հետ, ուղղություն էր տալիս նրանց գործունեությանը, հետևում պատերազմի ստրատեգիական պլանների, կուսակցության և ժողկոմխորհի ռազմական դիրեկտիվների մշակմանն ու իրականացմանը: Նա անմիջական կապի մեջ էր ռազմաճակատների ու բանակների հրամանատարության հետ, շարունակ տեղյակ էր լինում ստրատեգիական և օպերատիվ իրադրությանը, ժամանակին տալիս էր անհրաժեշտ ցուցումներ և հետևում դրանց պրակտիկ կատարմանը: Պահպանվել են Լենինի ձեռքով գրված 600 հեռագրեր, հեռախոսագրեր, նամակներ՝ նվիրված սոցիալիստական հայրենիքի պաշտպանության հարցերին: Վ. Ի. Լենինը, զուգակցելով քաղաքական և զինվորական միասնական ղեկավարությունը, ըստ էության կարմիր բանակի գերագույն գլխավոր հրամանատարն էր քաղաքացիական պատերազմի տարիներին և հենց նրա հանճարեղ ղեկավարությամբ ապահովվեց սովետական ժողովրդի հաղթանակը ինտերվենտների և սպիտակգվարդիականների դեմ մղված ծանր մարտերում:

Զինվորական հայտնի գործիչ, նախկին գլխավոր հրամանատար Ս. Ս. Կամենևը գրում էր, որ զինված պայքարի ղեկավարման լենինյան ոճը պարունակում էր «...հաջողության հասնելու բոլոր տարրերը. իրադրության մեջ զարմանալի արագությամբ կողմնորոշվելու հմտություն, ստույգ ցուցումներ գործողությունների եղանակների վերաբերյալ, հակառակորդի ուժերի, միջոցների,



ինչպես նաև նրա գործողությունների բնույթի հաշվառում: Միևնույն ժամանակ աչքաթող չէր արվում ոչ մի այնպիսի մանրուք, որը կարող էր ազդեցություն գործել օպերացիաների ելքի վրա... Բոլորի համար միանգամայն պարզ էր, որ Լենինը գտնվում է ռազմաճակատներում ծավալվող մեր բոլոր օպերացիաների ղեկավարության կենտրոնում. նա մոբիլիզացնում էր բանվորական մասսաներին, տեղաբաշխում մարդկանց ըստ ռազմաճակատների, սպառիչ ցուցումներ տալով հրամանատարությանը այս կամ այն ռազմաճակատի մերձավոր կամ ավելի հեռավոր խնդիրների վերաբերյալ» (К. Данишевский и С. Каменев. Воспоминания о Ленине. Ленин и гражданская война. Партиздат, М., 1933, стр. 18—19):

Վ. Ի. Լենինի՝ որպես ռազմական տեսաբանի և զորավարի մեծությունը կայանում էր և այն բանում, որ նա կանխատեսում էր իրադրությունների ընթացքը և օժտված էր վիթխարի ինտուիցիայով:

Վ. Ի. Լենինը առանձնահատուկ նշանակություն էր տալիս հարձակողական վճռական գործողություններին: Նա սովորեցնում էր. «Թշնամու վրա պատրաստվող հարձակումը պետք է ամենաեռանդուն բնույթ կրի. հարձակում և ոչ պաշտպանություն՝ պետք է դառնա մասսաների լոզունգը...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 11, էջ 209): Նա մատնանշում էր, որ հարձակումը պետք է այնպես կազմակերպել, որ զորքերը գնալով ուժեղացնեն առաջխաղացման տեմպերը, անընդհատ հետապնդեն թշնամուն: Երբ կարմիր բանակը իր ուժգին հարվածներն էր հասցնում Վրանգելին, Վ. Ի. Լենինը հետևյալ ցուցումն էր տալիս Հարավային ռազմաճակատի հրամանատարությանը. «Հիշեցեք, որ հարկավոր է ինչ էլ լինի հակառակորդին կրնկակոխ հետապնդելով մտնել Ղրիմ» (Նույն տեղը, հ. 35, էջ 496):

Միևնույն ժամանակ Վ. Ի. Լենինը շարունակ հանդես էր գալիս հախուռն հարձակում գործելու փորձերի, ստրատեգիայի հարցերում ավանտյուրիստական գործելակերպի դեմ: 1918 թվականին, երբ կայզերական Գերմանիայի զորքերը հարձակման անցան երիտասարդ սովետական երկրի դեմ, Լենինը մատնանշում էր, որ տվյալ պայմաններում ռազմական գործողությունների միակ հնարավոր ձևը հեղափոխական պաշտպանությունն է: 1918 թ. հունիսի կեսերին, Լենինի եռանդուն միջամտությամբ, մերժվեց Տրոցկու և գլխավոր հրամանատար Վացետիսի կործանարար պլանը, որոնք Կոլչակի դեմ կարմիր բանակի հաջող հարձակման պահին առաջարկում էին դադարեցնել հարձակումը և պաշտպանության անցնել Բելայա և Կամա գետերի սահմանագծում: Իսկ 1919 թ. աշնանը Լենինը ինքն էր, որ մերժեց պաշտպանության անցնելու առաջարկ (Տոբոլ գետի ավազանում), մատնանշելով, որ հետագա հարձակման պլանները բավականաչափ ապահովված չեն:

1920 թ. ամռանը Լենինը հավանություն չտվեց սպիտակ լեհերի և Վրանգելի դեմ միաժամանակյա հարձակում գործելու պլաններին, մատնանշելով, որ այդպիսի հարձակումը կլինի ավանտյուրիզմ:

Այս օրինակները վկայում են, թե Լենինը որպիսի խորությամբ, որքան ռեալիստորեն և ճկուն էր լուծում թե՛ հարձակման ու պաշտպանության, թե՛ դրանց զուգակցման խնդիրները: Իսկ դրանք ռազմական արվեստի կարևորագույն հարցեր են, որոնց լուծումից է կախված ռազմական գործողությունների ելքը:

Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս գլխավոր հարվածի ուղղության ընտրությանը, դրա վրա ուժերի ու միջոցների կենտրոնացմանը: Նա պահանջում էր, որ գլխավոր հարվածի ուղղության ընտրությունը համապատասխանի ստրատեգիական մտահղացմանը: Գլխավոր հարվածի իրականացման համար, ասում էր նա, հարկավոր է «...ուժերի մեծ գերակշռություն հավաքել վճռական վայրում» (Նույն տեղը, հ. 26, էջ 211):

Այս հարցի հետ անխզելի կապի մեջ է լենինյան կարևորագույն դրույթը հարված հասցնելու պահի ընտրության վերաբերյալ: «Պետք է աշխատել թշնամուն հանկարծակիի բերել, գտնել այն մոմենտը, երբ նրա զորքերը ցրված են» (Նույն տեղը): Լենինը դա համարում էր ռազմական արվեստի չափազանց կարևոր դրույթը:

թյունն է։ Կուսակցությունը, լինելով պրոլետարիատի դասակարգային կազմակերպության բարձրագույն ձևը, իսկ սոցիալիզմի օրոք ամբողջ ժողովրդի ավանգարդը, պարտավոր է իր ձեռքում պահել և պահում է քաղաքականության բոլոր լծակները, ինչպես նաև նրա այնպիսի կարևորագույն բնագավառը, որպիսին ռազմական շինարարությունն է։ Միայն կոմունիստական կուսակցությունը՝ աշխատավորների ճանաչված ղեկավարն ու կազմակերպիչն է ունակ լավագույն ձևով համախմբելու սոցիալիստական պետության ուժերն ու միջոցները, հարուցելու ժողովրդի աշխատանքային խանդավառությունը, հայրենիքի պաշտպանների մարտական հերոսությունը թշնամուն հակահարված տալու և սոցիալիստական պետության անվտանգությունն ապահովելու համար։

Անդրադառնալով քաղաքացիական պատերազմում սովետական իշխանության հաղթանակի պատճառներին՝ Վ. Ի. Լենինը գրում էր. «Եվ միայն շնորհիվ այն բանի, որ կուսակցությունն իր դիրքում էր, որ կուսակցությունը խիստ կարգապահ էր, և այն պատճառով, որ կուսակցության հեղինակությունը միավորում էր բոլոր գերատեսչություններն ու հիմնարկները, և Կենտկոմի տված լոզունգով ընթանում էին, ինչպես մեկ մարդ, տասնյակները, հարյուրներն ու հազարները և վերջին հաշվով միլիոնները, միայն այն պատճառով, որ անասելի զոհաբերություններ տեղի ունեցան,— միայն այս պատճառով այն հրաշքը, որ կատարվեց, կարող էր տեղի ունենալ։ Միայն այս պատճառով էր, որ չնայելով Անտանտի իմպերիալիստների և ամբողջ աշխարհի իմպերիալիստների կրկնակի, եռակի և քառակի արշավանքներին, մենք կարողացանք հաղթել» (Նույն տեղը, հ. 30, էջ 569)։

Քաղաքացիական պատերազմի տարիներին կոմունիստական կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն, Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, ղեկավարելով աշխատավորների պայքարը սովետական հանրապետության պաշտպանության համար մղվող մարտերում, շարունակ իրենց տեսադաշտում էին պահում քաղաքականության և ռազմական ստրատեգիայի, ստրատեգիական պլանավորման ու ղեկավարման պրոբլեմները։

ՌԿ(բ)Կ VIII համագումարում Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ կուսակցության Կենտկոմը սիստեմատիկ ղեկավարել է ռազմական գերատեսչությունը. «Չի եղել դեպք, որպեսզի ստրատեգիայի որևէ խոշոր հարցի վերաբերյալ չհրավիրվեր Կենտկոմի կամ Կենտկոմի բյուրոյի նիստ, որպեսզի մենք չլուծեինք ստրատեգիայի հիմնական հարցերը» (Ленинский сборник, XXXVII , стр. 137)։

Կուսակցության Կենտրոնական կոմիտեն հանդես էր գալիս որպես պետության պաշտպանության քաղաքական ու ստրատեգիական ղեկավարության մարտական շտաբ, որը երկրի բոլոր ջանքերն ուղղում էր թշնամուն ջախջախելու նպատակին։ Քաղաքացիական պատերազմի տարիներին քաղաքական և ռազմական ղեկավարության միասնության լենինյան սկզբունքն իր արտահայտությունը գտավ, մասնավորապես, լիակատար իշխանությամբ օժտված այնպիսի օրգանի գործունեության մեջ, ինչպիսին էր Վ. Ի. Լենինի գլխավորած Բանվորական ու գյուղացիական պաշտպանության խորհուրդը։ Պաշտպանության խորհուրդը միավորում էր ռազմական գերատեսչության, կարմիր բանակի մատակարարման արտակարգ հանձնաժողովի, հաղորդակցության ուղիների և պարենի ժողկոմատների ու այլ գերատեսչությունների գործունեությունը, իրականացնում էր երկիրը միասնական մարտական ճամբարի վերածելու կուսակցության գիծը, ապահովում կուսակցության Կենտկոմի «Ամեն ինչ ռազմաճակատի համար» լոզունգի կենսագործումը։

Կուսակցությունը, ղեկավարելով երկրի ռազմական շինարարությունն ու պաշտպանության գործը, հենվում է իր վիթխարի քաղաքական փորձի, ժողովրդի լիակատար վստահության և ռազմական գիտելիքներին տիրապետող զինվորական կադրերի վրա։ Վ. Ի. Լենինը շարունակ ընդգծում էր, որ սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառների ղեկավարության համար մեծ նշանակություն ունեն ոչ միայն դասակարգային, քաղաքական հասունությունը, այլև մասնագիտական գիտելիքները, մասնագետները։ Դա վերաբերում



է նաև երկրի պաշտպանության ղեկավարությանը։ «Առանց կրթված, ինտելիգենտ, մասնագետ մարդկանց խորհրդի, ղեկավարող ցուցումների, չի կարելի կառավարվել» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26, էջ 502)։

Աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը իր ծննդյան օրից ստիպված է մշտապես հոգ տանել իմպերիալիստական ոտնձգություններից երկիրը պաշտպանելու մասին։ Սովետական ժողովրդի համար մեծ բարեբախտություն էր, որ այդ խիստ կարևոր գործի ակունքների մոտ կանգնած էր Վ. Ի. Լենինը։ Հայրենիքի պաշտպանության վերաբերյալ հեղափոխության առաջնորդի տեսական հարուստ ժառանգությունը այն անգնահատելի զինանոցն է, որից միշտ օգտվում են բոլոր նրանք, ում երկիրը վստահել է այդ մեծ ու պատվավոր պարտականությունը։

Ինչպես իր գործունեության մյուս բնագավառներում, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության ամրապնդման ասպարեզում ևս կոմունիստական կուսակցությունը անշեղորեն առաջնորդվում է մեծ Լենինի պատգամներով։ «ՍՄԿԿ-ն սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը, ՍՍՀՄ պաշտպանության, սովետական զինված ուժերի հզորության ամրապնդումը դիտում է որպես կուսակցության, սովետական ողջ ժողովրդի սրբազան պարտքը, որպես սովետական պետության կարևորագույն ֆունկցիան»,— ասվում է ՍՄԿԿ Ծրագրում (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 533)։

Ժամանակակից առաջնակարգ տեխնիկայով զինված մեր բանակը, ինչպես միշտ, հուսալիորեն պաշտպանում է կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի խաղաղ, ստեղծարար աշխատանքը։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

# ԲՈՒԼՂԱՐԻԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ 30-ԱՄՅԱԿԸ

Լ. Ա. ԲԱՅՐԱՄՅԱՆ

1974 թ. սեպտեմբերի 9-ին լրացավ Բուլղարիայում սոցիալիստական կարգերի հաստատման 30-ամյա փառապանծ հոբելյանը:

Բուլղարիայի հազարամյա պատմության մեջ երեք տասնամյակն աննշան ժամանակաշրջան է, սակայն բուլղար ժողովրդի համար այն տնտեսական, քաղաքական ու կուլտուրական վիթխարի նվաճումների մի ամբողջ էպոխա է:

Բուլղար ժողովրդի ազգային-ազատագրական, հակաֆաշիստական պայքարը գերմանական օկուպանտների և երկրում իշխող միապետական-ֆաշիստական դիկտատուրայի դեմ ավարտվեց 1944 թ. սեպտեմբերի 9-ի ժողովրդական զինված ապստամբության փայլուն հաղթանակով: Այդ պայքարի հաջողության գլխավոր պայմանը հերոսական սովետական բանակի մարտական օգնությունն էր:

Սեպտեմբերյան հեղափոխությունը ժողովրդին փրկեց ազգային աղետից և նրա առջև բացեց սոցիալիզմի կառուցման ուղին: Ժողովրդի պատմական ճակատագրում տեղի ունեցավ արմատական բեկում: Բուլղարիան սկսեց ապրել իսկական ազգային վերածնություն:

Սոցիալիստական հեղափոխությունը կատարվեց ժողովրդա-դեմոկրատական հեղափոխության ձևով, աշխատավորական զանգվածների ակտիվ աջակցությամբ: Հեղափոխության առաջատար ուժը բանվոր դասակարգն էր:

Ժողովրդա-դեմոկրատական կարգերը հաստատվեցին դասակարգային սուր պայքարի պայմաններում: Ներքին հակահեղափոխական ուժերը, իմպերիալիստական պետությունների աջակցությամբ, փորձում էին տապալել դեմոկրատական կառավարությունը և վերականգնել բուրժուական կարգերը: Բուլղար ժողովրդի համար այդ ծանր օրերին նրան կրկին օգնության հասավ Սովետական Միությունը, որը, կատարելով իր ինտերնացիոնալ պարտքը, տնտեսական ու քաղաքական մեծ օգնություն ցույց տվեց եղբայրական ժողովրդին:

1945 թ. նոյեմբերին Ժողովրդական ժողովի ընտրություններում աշխատավորությունը վճռական հարված հասցրեց բուրժուական օպոզիցիային ու նրա թիկունքում կանգնած օտարերկրյա տերություններին: Ամրապնդվեցին դեմոկրատական կարգերը, Բուլղարիայի հայրենական ճակատի (ԲՀՃ) կառավարությունը Սովետական Միության հետ բարեկամական ամուր կապեր հաստատեց:

1946 թ. համաժողովրդական ռեֆերենդումի ժամանակ աշխատավորական լայն զանգվածներն արտահայտվեցին հօգուտ ժողովրդա-դեմոկրատական կարգերի ամրապնդման և միապետական կարգերի լիկվիդացման, իսկ 1947 թ. համաժողովրդական քննարկումից հետո, Ժողովրդական մեծ ժողովն



ընդունեց նոր սահմանադրություն, որով օրենսդրական կարգով ամրապնդվեցին աշխատավորության դեմոկրատական նվաճումները և ժողովրդական իշխանության հիմքերը:

Երկրի հասարակական-քաղաքական կարգերի դեմոկրատացմանը զուգահեռ, ազգայնացվեցին արդյունաբերական ձեռնարկությունները, տրանսպորտը, արտաքին առևտուրը, կապի միջոցները, բանկերը, պատերազմի հանցագործների գույքը, ոչնչացվեցին մոնոպոլիստական միությունները, իսկ գյուղում լուծվեց ագրարային հարցը՝ «հողը պատկանում է նրան, ով այն մշակում է» նշանաբանով: Ագրարային ռեֆորմն է՛լ ավելի ամրապնդեց բանվորա-գյուղացիական դաշինքը՝ ժողովրդա-դեմոկրատական հանրապետության հենարանը:

Միապետական-ֆաշիստական Բուլղարիայում տիրապետում էր օտարերկրյա, հատկապես գերմանական կապիտալը, որը կողոպտել էր երկիրը, քայքայել էկոնոմիկան, արգելակել նրա զարգացումը: Բուլղարիայում թագավորում էին թշվառությունն ու գործազրկությունը:

Բուլղար ժողովրդի մարտական ավանգարդի՝ կոմունիստական կուսակցության քաղաքական կուրսի ու վճռական ձեռնարկումների շնորհիվ արագորեն վերականգնվեց ժողովրդական տնտեսությունը, ապահովվեց երկրի ինդուստրացումը, կոոպերացվեց գյուղը, կառուցվեցին սոցիալիստական հասարակարգի հիմքերը: Երեք տասնամյակում հետամնաց ագրարային երկրից Բուլղարիան դարձավ զարգացած ինդուստրիալ-ագրարային երկիր:

1962 թ. ԲԿԿ-ի VIII համագումարն ընդունեց ժողովրդական տնտեսության՝ 1961—1980 թթ. հեռանկարային զարգացման դիրեկտիվները և գտավ, որ քսան տարվա ընթացքում պետք է ավարտել սոցիալիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը և աստիճանաբար անցնել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ծավալուն կառուցմանը: Կուսակցության X համագումարը (1971 թ.), որն ընդունեց ԲԿԿ-ի նոր ծրագիրը և ժողովրդական տնտեսության զարգացման վեցերորդ հնգամյակի (1971—1975 թթ.) դիրեկտիվները, հաշվի առնելով արտադրողական ուժերի զարգացման աստիճանը, գիտա-տեխնիկական հեղափոխության ընձեռած հնարավորությունները, ինչպես և սոցիալիստական աշխատանքի միջազգային ինտեգրացիայի խորացումը, գտավ, որ նոր հնգամյակի գլխավոր խնդիրը պետք է լինի էկոնոմիկայի արագ վերելքը և ժողովրդի նյութական ու հոգևոր հարաճուն պահանջմունքների բազմակողմանի ու լրիվ բավարարումը: Վեցերորդ հնգամյակը պետք է դառնա կուսակցության ու ժողովրդի պայքարի կարևոր փուլը՝ զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման գործում:

Ժողովրդական հանրապետության էկոնոմիկայի բուռն վերելքի լավագույն ապացույցը նրա բարձր ցուցանիշներն են: 1973 թ. արդյունաբերության արտադրանքը, 1939 թ. համեմատ, աճեց 47 անգամ: Ներկայումս ժողովրդական հանրապետությունն արտադրում է էլեկտրահաշվիչ մեքենաներ, հեռուստացույցներ, հզոր տրակտորներ, ծրագրային կառավարմամբ հաստոցներ, բարդ էլեկտրասարքավորումներ, որոնց մասին բուրժուական Բուլղարիայում երազել անգամ չէին կարող:

Ժողովրդական տնտեսության մեջ անշեղորեն աճում է աշխատանքի արտադրողականությունը. 1971 թ.՝ 5,2, 1972 թվականին՝ 9,1, 1973 թվականին՝ 9,4 տոկոս, այսպիսին է դրա աճի դինամիկ պատկերը: Ազգային եկամուտը 30 տարիների ընթացքում աճել է 8 անգամ:

1974 թվականը՝ հոբելյանական տարին, կնշանավորվի տնտեսական նորանոր նվաճումներով: Արդյունաբերության արտադրանքը, հետպատերազմյան էկոնոմիկայի վերականգնման ավարտական տարվա (1964 թ.) համեմատ, կաճի մոտ 24 անգամ: Աշխատանքի արտադրողականությունը բարձրանալու է 9,5, ազգային եկամուտն աճելու 10, արդյունաբերության արտադրանքը մեծանալու 11, իսկ գյուղատնտեսությանը՝ 5 տոկոսով: Ընթացիկ տարում ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումը կհասնի 4 **մլրդ** 452 **մլն** լևի:

Հոբելյանական տարում ազգային եկամտի 55 տոկոսն ստացվելու է ար-

հաշվարկի սկզբունքով: Դրանցում խիստ կենտրոնացված է վարչական ու տնտեսական ղեկավարությունը, որն ընդգրկում է գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկտորական, արտադրական, առևտրական ու գործունեության այլ ոլորտներ: Կուսակցությունն ու կառավարությունը հատուկ ուշադրություն են դարձնում երկրում արտադրողական ուժերը համաչափ բաշխելու վրա՝ հաշվի առնելով հումքի աղբյուրների առկայությունը և դեմոգրաֆիկ տվյալները:

Ժողովրդական հանրապետության կյանքում կարևոր տեղ ունի գյուղատնտեսությունը: Բուրժուական Բուլղարիայում, ինչպես էկոնոմիկայի մյուս ճյուղերը, գյուղատնտեսությունը ևս աչքաթող էր արված և խիստ ետ էր մնում: ԲԿԿ-ն և կառավարությունը, նկատի ունենալով Բուլղարիայի պատմական պայմանները և ազգային տրադիցիաները, ստեղծագործորեն կիրառեցին գյուղատնտեսության կոոպերացման լենինյան պլանը, կազմակերպեցին աշխատանքային կոոպերատիվ հողագործական տնտեսություններ և աստիճանաբար գյուղատնտեսությունը փոխադրեցին զարգացման սոցիալիստական ուղու վրա:

Գյուղատնտեսության զարգացման գործում Բուլղարիային մեծ օգնություն է ցույց տալիս ՍՍՀՄ-ը: Նրա դաշտերում աշխատող տրակտորների 90 տոկոսը ստացված է Սովետական Միությունից: Հացահատիկային դաշտերի 83 տոկոսի վրա ցանված է սովետական «բեզոստայա-1» բարձր բերքատու սերմը: Բուլղարիան ՏՓԽ-ի «Ագրոմաշ» կազմակերպության անդամ է և մասնագիտանում է գյուղատնտեսական մի շարք մեքենաների արտադրության մեջ: Լայն ծավալ է ընդունել սովետա-բուլղարական համագործակցությունը կենդանիների ու թռչունների նոր ցեղերի, գյուղատնտեսական կուլտուրաների նոր տեսակների ստեղծման բնագավառում: Գյուղատնտեսության մեջ նկատելի կշիռ ունեն ագրարային արդյունաբերական կոմպլեքսները, որոնց թիվը այժմ հասնում է 170-ի: Գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման արդի մակարդակով ԲԺՀ-ն դասվում է Եվրոպայի տնտեսապես զարգացած երկրների շարքը:

Արտադրության մեքենայացման ու առաջավոր ագրոտեխնիկայի կիրառման շնորհիվ ԲԺՀ-ի գյուղատնտեսությունը դարձել է էկոնոմիկայի զարգացած ու շահութաբեր ճյուղերից մեկը, նրա արտադրանքն աճել է հինգ անգամ: Բնակչության մեկ շնչի հաշվով հացահատիկի, բանջարեղենի, ծխախոտի և մրգերի արտադրությամբ ԲԺՀ-ն աշխարհում գրավում է առաջին տեղը: Նա առաջինն է նաև գյուղատնտեսական մթերքների արտադրության տեմպերով: Սակայն ձեռք բերած հաջողությունները վերջնական չեն: 1973 թ. ԲԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը խնդիր դրեց գյուղատնտեսական հիմնական աշխատանքները դարձնել ինդուստրիալ աշխատանքի մի տարատեսակը, ձգտել այն բանին, որ մոտակա տարիներին էներգազինվածությամբ գյուղատնտեսությունը հասնի արդյունաբերությանը:

Ժողովրդական Բուլղարիան գյուղատնտեսության ասպարեզում ձեռք բերած հաջողություններով իր ավանդն է ներդնում սոցիալիստական համագործակցության երկրների գյուղատնտեսության ընդհանուր առաջընթացի գործում:

Արդյունաբերության ու գյուղատնտեսության ասպարեզում ձեռք բերած հաջողությունները հնարավորություն են տալիս ԲԺՀ-ին հոբելյանական տարում մասնակցելու միջազգային 23 տոնավաճառների և արտասահմանյան երկրներում ինքնուրույն ձևով կազմակերպելու 127 ցուցահանդեսներ:

Սոցիալիզմի հաղթանակը ԲԺՀ-ում ապահովեց ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացումը, որի լավագույն երաշխիքը երկրի էկոնոմիկայի ծաղկումն է ու ազգային եկամտի աճը: ԲԿԿ-ի քաղաքականությունը աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման քաղաքականությունն է: Նրա ծրագրում ասված է. «Հոգատարությունը մարդու նկատմամբ կուսակցության հիմնական նպատակն է»: Արտադրաուժերի արագ զարգացման, արտադրահարաբերությունների կատարելագործման, հասարակության համակողմանի առաջընթացի համար մղվող պայքարը



լիովին համապատասխանում է «ամեն ինչ հանուն մարդու, ամեն ինչ մարդու բարօրության համար» նշանաբանին:

ԲԿԿ-ն և ժողովրդական կառավարությունը քաղաքական այդ կուրսն իրականացնում են աշխատավարձի բարձրացման, սպառման հասարակական ֆոնդերի մեծացման և լայն սպառման առարկաների ու կենցաղի ծառայությունների գների իջեցման միջոցով:

Հոբելյանական տարում, 1952 թվականի համեմատ, աշխատավորների ռեալ եկամուտները կմեծանան 3,5, իսկ սպառման հասարակական ֆոնդերին հատկացվող գումարները՝ 10 անգամ: Հատկապես խոշոր միջոցներ են տրամադրվում սոցիալական ապահովագրությանը, ժողովրդական կրթությանը և առողջապահությանը: ԲԺՀ-ն աշխարհի առաջին երկրներից է, որտեղ մտցրված է գյուղացիների սոցիալական ապահովագրություն:

Կուսակցությունն ու կառավարությունը մեծ հոգատարություն են հանդես բերում աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման նկատմամբ: Մինչև 1973 թ. կառուցվել է 1.230 հազար բնակարան: Բնակչության 2/3-ը ապրում է նոր տներում: Նախատեսված է առաջիկա 10—15 տարիներին լրիվ լուծել բնակարանային հարցը:

1972 թ. ԲԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը հաստատեց աշխատավորների նյութական բարեկեցության և հոգևոր կուլտուրայի բարձրացման կոմպլեքսային պլան, որի համաձայն առաջիկա 10—12 տարում կստեղծվեն այնպիսի նախադրյալներ, երբ հասարակությունը լրիվ իր վրա կվերցնի երեխաների հոգատարությունը:

Տնտեսական-քաղաքական պատմական վերափոխությունների հետ արմատապես վերակառուցվել է երկրի կուլտուրական կյանքը: Ժողովրդական իշխանությունը դեմոկրատականացրեց կրթության սիստեմը, ուսուցումը դարձրեց ձրի ու պարտադիր և աշխատավորության առջև լայնորեն բացեց կուլտուրայի ու գիտության դռները: Այժմ բոլոր ուսումնական հաստատություններում սովորում են 1,5 **մլն** աշակերտներ և ուսանողներ: Միայն բուհերում սովորում են 100 հազար երիտասարդներ: ԲԺՀ-ն տասը հազար բնակչի հաշվով ուսանողների և 1.000 բնակչի հաշվով՝ արտադրության մեջ աշխատող բարձրագույն կրթություն ունեցող մասնագետների թվով աշխարհում գրավում է առաջին տեղերից մեկը:

ԲԿԿ-ի և կառավարության ամենօրյա հոգատարության շնորհիվ տարեցտարի մեծանում են ժողովրդական կրթությանը հատկացվող գումարները: Կուսակցության X համագումարի որոշմամբ սահմանվել է ընդհանուր տասնամյա կրթություն:

Բուլղարիան դեմոկրատական կարգերի ժամանակ դարձել է առաջավոր գիտության ու կուլտուրայի երկիր: Բուլղարիայում գիտության զարգացման գործում կարևոր ավանդ ունի ՍՍՀՄ-ը, որը մեծ աջակցություն է ցույց տալիս ինչպես գիտական կադրերի պատրաստման, այնպես էլ գիտության տարբեր բնագավառների զարգացման գործում: ՍՍՀՄ-ում բարձրագույն կրթություն են ստացել 7 հազար բուլղար երիտասարդներ և թեկնածուական ու դոկտորական դիսերտացիաներ են պաշտպանել 900 գիտաշխատողներ:

Սոցիալիստական շինարարության տարիներին շեշտակիորեն բարձրացել է աշխատավորների հոգևոր կուլտուրան: Մարքսիզմ-լենինիզմը դարձել է տիրապետող գաղափարախոսություն: Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում կարևոր դեր են խաղում գրականությունը, մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, կուլտուր-կրթական հիմնարկները: Երկրում գործում են կուլտուրայի 20 հազար հիմնարկներ: Հրատարակվել են մոտ 90 հազար գիրք՝ 320 **մլն** տպաքանակով: Մեկ շնչի հաշվով հրատարակված գրքերի թվով Բուլղարիան աշխարհում գրավում է առաջին տեղերից մեկը: Այստեղ լույս է տեսնում 706 անուն թերթ՝ 800 **մլն** տպաքանակով: Երկիրը լրիվ ռադիոֆիկացվել է:

Մեծացել է աշխատավորների հետաքրքրասիրությունն արվեստի նկատմամբ: Երկրում կան 15 հազար ինքնագործ գեղարվեստական խմբեր: Դրամատիկական թատրոնները տարեկան հաճախում են 6 **մլն**, իսկ կինոթատրոնները՝

հաշվարկի սկզբունքով: Դրանցում խիստ կենտրոնացված է վարչական ու տնտեսական ղեկավարությունը, որն ընդգրկում է գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկտորական, արտադրական, առևտրական ու գործունեության այլ ոլորտներ: Կուսակցությունն ու կառավարությունը հատուկ ուշադրություն են դարձնում երկրում արտադրողական ուժերը համաչափ բաշխելու վրա՝ հաշվի առնելով հումքի աղբյուրների առկայությունը և դեմոգրաֆիկ տվյալները:

Ժողովրդական հանրապետության կյանքում կարևոր տեղ ունի գյուղատնտեսությունը: Բուրժուական Բուլղարիայում, ինչպես էկոնոմիկայի մյուս ճյուղերը, գյուղատնտեսությունը ևս աչքաթող էր արված և խիստ ետ էր մնում: ԲԿԿ-ն և կառավարությունը, նկատի ունենալով Բուլղարիայի պատմական պայմանները և ազգային տրադիցիաները, ստեղծագործորեն կիրառեցին գյուղատնտեսության կոոպերացման լենինյան պլանը, կազմակերպեցին աշխատանքային կոոպերատիվ հողագործական տնտեսություններ և աստիճանաբար գյուղատնտեսությունը փոխադրեցին զարգացման սոցիալիստական ուղու վրա:

Գյուղատնտեսության զարգացման գործում Բուլղարիային մեծ օգնություն է ցույց տալիս ՍՍՀՄ-ը: Նրա դաշտերում աշխատող տրակտորների 90 տոկոսը ստացված է Սովետական Միությունից: Հացահատիկային դաշտերի 83 տոկոսի վրա ցանված է սովետական «բեզոստայա-1» բարձր բերքատուսերմը: Բուլղարիան ՏՓԽ-ի «Ագրոմաշ» կազմակերպության անդամ է և մասնագիտանում է գյուղատնտեսական մի շարք մեքենաների արտադրության մեջ: Լայն ծավալ է ընդունել սովետա-բուլղարական համագործակցությունը կենդանիների ու թռչունների նոր ցեղերի, գյուղատնտեսական կուլտուրաների նոր տեսակների ստեղծման բնագավառում: Գյուղատնտեսության մեջ նկատելի կշիռ ունեն ագրարային արդյունաբերական կոմպլեքսները, որոնց թիվը այժմ հասնում է 170-ի: Գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման արդի մակարդակով ԲԺՀ-ն դասվում է Եվրոպայի տնտեսապես զարգացած երկրների շարքը:

Արտադրության մեքենայացման ու առաջավոր ագրոտեխնիկայի կիրառման շնորհիվ ԲԺՀ-ի գյուղատնտեսությունը դարձել է էկոնոմիկայի զարգացած ու շահութաբեր ճյուղերից մեկը, նրա արտադրանքն աճել է հինգ անգամ: Բնակչության մեկ շնչի հաշվով հացահատիկի, բանջարեղենի, ծխախոտի և մրգերի արտադրությամբ ԲԺՀ-ն աշխարհում գրավում է առաջին տեղը: Նա առաջինն է նաև գյուղատնտեսական մթերքների արտադրության տեմպերով: Սակայն ձեռք բերած հաջողությունները վերջնական չեն: 1973 թ. ԲԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը խնդիր դրեց գյուղատնտեսական հիմնական աշխատանքները դարձնել ինդուստրիալ աշխատանքի մի տարատեսակը, ձգտել այն բանին, որ մոտակա տարիներին էներգազինվածությամբ գյուղատնտեսությունը հասնի արդյունաբերությանը:

Ժողովրդական Բուլղարիան գյուղատնտեսության ասպարեզում ձեռք բերած հաջողություններով իր ավանդն է ներդնում սոցիալիստական համագործակցության երկրների գյուղատնտեսության ընդհանուր առաջընթացի գործում:

Արդյունաբերության ու գյուղատնտեսության ասպարեզում ձեռք բերած հաջողությունները հնարավորություն են տալիս ԲԺՀ-ին հոբելյանական տարում մասնակցելու միջազգային 23 տոնավաճառների և արտասահմանյան երկրներում ինքնուրույն ձևով կազմակերպելու 127 ցուցահանդեսներ:

Սոցիալիզմի հաղթանակը ԲԺՀ-ում ապահովեց ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացումը, որի լավագույն երաշխիքը երկրի էկոնոմիկայի ծաղկումն է ու ազգային եկամտի աճը: ԲԿԿ-ի քաղաքականությունը աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման քաղաքականությունն է: Նրա ծրագրում ասված է. «Հոգատարությունը մարդու նկատմամբ կուսակցության հիմնական նպատակն է»: Արտադրաուժերի արագ զարգացման, արտադրահարաբերությունների կատարելագործման, հասարակության համակողմանի առաջընթացի համար մղվող պայքարը



լիովին համապատասխանում է «ամեն ինչ հանուն մարդու, ամեն ինչ մարդու բարօրության համար» նշանաբանին:

ԲԿԿ-ն և ժողովրդական կառավարությունը քաղաքական այդ կուրսն իրականացնում են աշխատավարձի բարձրացման, սպառման հասարակական ֆոնդերի մեծացման և լայն սպառման առարկաների ու կենցաղի ծառայությունների գների իջեցման միջոցով:

Հոբելյանական տարում, 1952 թվականի համեմատ, աշխատավորների ռեալ եկամուտները կմեծանան 3,5, իսկ սպառման հասարակական ֆոնդերին հատկացվող գումարները՝ 10 անգամ: Հատկապես խոշոր միջոցներ են տրամադրվում սոցիալական ապահովագրությանը, ժողովրդական կրթությանը և առողջապահությանը: ԲԺՀ-ն աշխարհի առաջին երկրներից է, որտեղ մտցրված է գյուղացիների սոցիալական ապահովագրություն:

Կուսակցությունն ու կառավարությունը մեծ հոգատարություն են հանդես բերում աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման նկատմամբ: Մինչև 1973 թ. կառուցվել է 1.230 հազար բնակարան: Բնակչության 2/3-ը ապրում է նոր տներում: Նախատեսված է առաջիկա 10—15 տարիներին լրիվ լուծել բնակարանային հարցը:

1972 թ. ԲԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը հաստատեց աշխատավորների նյութական բարեկեցության և հոգևոր կուլտուրայի բարձրացման կոմպլեքսային պլան, որի համաձայն առաջիկա 10—12 տարում կստեղծվեն այնպիսի նախադրյալներ, երբ հասարակությունը լրիվ իր վրա կվերցնի երեխաների հոգատարությունը:

Տնտեսական-քաղաքական պատմական վերափոխությունների հետ արմատապես վերակառուցվել է երկրի կուլտուրական կյանքը: Ժողովրդական իշխանությունը դեմոկրատականացրեց կրթության սիստեմը, ուսուցումը դարձրեց ձրի ու պարտադիր և աշխատավորության առջև լայնորեն բացեց կուլտուրայի ու գիտության դռները: Այժմ բոլոր ուսումնական հաստատություններում սովորում են 1,5 **մլն** աշակերտներ և ուսանողներ: Միայն բուհերում սովորում են 100 հազար երիտասարդներ: ԲԺՀ-ն տասը հազար բնակչի հաշվով ուսանողների և 1.000 բնակչի հաշվով՝ արտադրության մեջ աշխատող բարձրագույն կրթություն ունեցող մասնագետների թվով աշխարհում գրավում է առաջին տեղերից մեկը:

ԲԿԿ-ի և կառավարության ամենօրյա հոգատարության շնորհիվ տարեցտարի մեծանում են ժողովրդական կրթությանը հատկացվող գումարները: Կուսակցության X համագումարի որոշմամբ սահմանվել է ընդհանուր տասնամյա կրթություն:

Բուլղարիան դեմոկրատական կարգերի ժամանակ դարձել է առաջավոր գիտության ու կուլտուրայի երկիր: Բուլղարիայում գիտության զարգացման գործում կարևոր ավանդ ունի ՍՍՀՄ-ը, որը մեծ աջակցություն է ցույց տալիս ինչպես գիտական կադրերի պատրաստման, այնպես էլ գիտության տարբեր բնագավառների զարգացման գործում: ՍՍՀՄ-ում բարձրագույն կրթություն են ստացել 7 հազար բուլղար երիտասարդներ և թեկնածուական ու դոկտորական դիսերտացիաներ են պաշտպանել 900 գիտաշխատողներ:

Սոցիալիստական շինարարության տարիներին շեշտակիորեն բարձրացել է աշխատավորների հոգևոր կուլտուրան: Մարքսիզմ-լենինիզմը դարձել է տիրապետող գաղափարախոսություն: Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում կարևոր դեր են խաղում գրականությունը, մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, կուլտուր-կրթական հիմնարկները: Երկրում գործում են կուլտուրայի 20 հազար հիմնարկներ: Հրատարակվել են մոտ 90 հազար գիրք՝ 320 **մլն** տպաքանակով: Մեկ շնչի հաշվով հրատարակված գրքերի թվով Բուլղարիան աշխարհում գրավում է առաջին տեղերից մեկը: Այստեղ լույս է տեսնում 706 անուն թերթ՝ 800 **մլն** տպաքանակով: Երկիրը լրիվ ռադիոֆիկացվել է:

Մեծացել է աշխատավորների հետաքրքրասիրությունն արվեստի նկատմամբ: Երկրում կան 15 հազար ինքնագործ գեղարվեստական խմբեր: Դրամատիկական թատրոնները տարեկան հաճախում են 6 **մլն**, իսկ կինոթատրոնները՝

100 մլն հանդիսատեսներ: Բուլղարական կինոարվեստը համաշխարհային ճանաչման է արժանացել: Նրա նկարները ցուցադրվում են 80 երկրներում:

Ժողովրդական Բուլղարիան համաշխարհային առաջավոր կուլտուրայի կենտրոններից է: Այստեղ կազմակերպվում են օպերային երիտասարդ երգիչների և պ. րարվեստի միջազգային մրցույթներ, կամերային երաժշտության և ժողովրդական բանահյուսության միջազգային փառատոներ:

Ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական բուլղարական կուլտուրան ու արվեստն արտացոլում են ժողովրդի ստեղծարար աշխատանքը, հայրենի երկրի հերոսական առօրյան, բացահայտում աշխատավորների ստեղծագործական տաղանդը, նրա հոգևոր կերպարն ու վեհ ձգտումները, նպաստում լայն մասսաների կոմունիստական դաստիարակությանը:

Կուսակցության ու կառավարության ամենօրյա հոգատարության առարկան է աշխատավորների առողջապահության գործի կազմակերպումը: Այդ ասպարեզում իրավիճակն արմատապես բարելավվել է: Առողջապահական մարմինները մեծ ուշադրություն են դարձնում պրոֆիլակտիկ միջոցառումներին, մոր ու մանկան առողջության պահպանմանը, սիրտ-անոթային, ներվային և օնկոլոգիական հիվանդությունների դեմ պայքարի կազմակերպմանը:

Բուլղարիան ունի բացառիկ նպաստավոր պայմաններ առողջարանային-կուրորտային բուժման համար: Երկրում գործում են 282 առողջարան և 1.076 հանգստյան տուն, որտեղ ամեն տարի բուժվում ու հանգստանում են տասնյակ հազարավոր աշխատավորներ: 10 հազար բնակչին ընկնող բժիշկների թվով ԲԺՀ-ն աշխարհի 5-րդ պետությունն է:

Սոցիալիզմի հաղթանակը, արտադրաուժերի վիթխարի առաջընթացը լայն հնարավորություններ են ստեղծում աշխատավորության նյութական ու կուլտուրական մակարդակը հետագայում ավելի բարձրացնելու համար:

Արմատապես փոխվել է Բուլղարիայի միջազգային դրությունը: Տնտեսական զարգացման դինամիկան, արտաքին ակտիվ քաղաքականությունը, սոցիալիստական երկրների համագործակցությանը պատկանելը պայմանավորում են նրա ամուր դիրքը աշխարհում:

Ժողովրդական Բուլղարիան ՏՓԽ-ի և Վարշավայի պայմանագրի կազմակերպության իրավահավասար անդամ է: Նրա արտաքին քաղաքականությունը խաղաղության, սոցիալական տարբեր սիստեմ ունեցող երկրների խաղաղ գոյակցության քաղաքականությունն է: ԲԿԿ-ի X համագումարը նշեց, որ կառավարության արտաքին քաղաքականության գլխավոր նպատակը սոցիալիստական հեղափոխության նվաճումների պաշտպանությունն է, սոցիալիստական հասարակարգի կառուցման ապահովումը, համաշխարհային սոցիալիստական սիստեմի և բոլոր երկրների կոմունիստական կուսակցությունների եղբայրական միասնության ամրապնդումը, իմպերիալիզմի դեմ ազգային-ազատագրական, հեղափոխական բոլոր ուժերի համախմբումը՝ հանուն ամբողջ աշխարհում խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի հաղթանակի:

1955 թ. Բուլղարիան ՄԱԿ-ի անդամ է: Նա ընդգրկված է 200 միջազգային կազմակերպություններում: Դիվանագիտական կապեր ունի 91 պետությունների, իսկ առևտրական կապեր՝ 111 երկրների հետ:

Անկախ և ուժեղ սոցիալիստական Բուլղարիայի գոյության հիմնական երաշխիքը նրա բարեկամությունն ու համագործակցությունն է ՍՍՀՄ-ի հետ: Ռուս և բուլղար ժողովրդի բարեկամությունն ունի դարավոր պատմություն, սակայն բուլղարա-սովետական հարաբերություններում արմատական բեկում կատարվեց, երբ Բուլղարիայում հաստատվեց բանվորա-գյուղացիական իշխանություն: ՍՄԿԿ-ի և ԲԿԿ-ի եղբայրական համագործակցությունն իր արտահայտությունն է գտնում հասարակական-քաղաքական կյանքի բոլոր ասպարեզներում: Այն ձեռք է բերվել ժողովուրդների ազատության ու երջանկության համար մղված համատեղ պայքարում և մեծագույն նվաճում է երկու կուսակցությունների համար:

Մեծ հայրենասեր Գ. Մ. Դիմիտրովն ասում էր, որ յուրաքանչյուր բուլղարացու սերն ու բարեկամությունը ՍՍՀՄ-ի նկատմամբ պետք է կրեն ոչ



միայն զգացմունքային, այլև խոր համոզմունքի ու գիտակցական բնույթ: Սովետա-բուլղարական բարեկամության պահպանումը պետք է դառնա բոլոր հայրենասերների սրբազան պարտքը, քանի որ դրանից են կախված հայրենիքի անկախությունը և ազգի երջանկությունը:

Սովետա-բուլղարական բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության պայմանագիրը Գ. Մ. Դիմիտրովը գնահատեց որպես հավասարություն՝ հավասարության, բարեկամություն՝ բարեկամության սկզբունքների վրա հիմնված պայմանագիր: «Բարեկամությունը Սովետական Միության հետ,— ուսուցանում է նա,— բուլղար ժողովրդի համար այնպիսի կենսական անհրաժեշտություն է, ինչպես արևն ու օդը ամեն մի կենդանի էակի համար»:

Ժողովրդական Բուլղարիայի 30-ամյա պատմությունը ցույց է տալիս, որ նրա անկախությունը և տերիտորիալ ամբողջականությունը պահպանելու, հայրենիքի պաշտպանությունն ամրապնդելու, ինչպես և սոցիալիզմի կառուցման գործում նորանոր նվաճումներ ձեռք բերելու գլխավոր երաշխիքը ՍՍՀՄ-ի հետ ունեցած անխախտ բարեկամությունն է: «Եթե մեզ հարցնեին, թե ինչ է սոցիալիստական ինտերնացիոնալիզմը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— մենք կպատասխանեինք. նայեցեք Բուլղարիայի և Սովետական Միության հարաբերություններին: Այդ սոցիալիստական ինտերնացիոնալիզմն է գործողության մեջ»:

Բարձր գնահատելով բուլղարա-սովետական բարեկամությունը և տնտեսական ու քաղաքական համագործակցությունը, ԲԿԿ-ի առաջին քարտուղար, Պետական խորհրդի նախագահ Թ. Ժիվկովն ասում է, որ այն Բուլղարիայի հաջողությունների ու ծաղկման աղբյուրն է, նրա ազգային անկախության երաշխիքը: «Այդ իսկ պատճառով այսօր բուլղար ժողովրդի սերը Սովետական Միության նկատմամբ նույնքան մաքուր ու սուրբ է, որքան մաքուր ու սուրբ է նրա սերը հայրենիքի հանդեպ: Ուստի, այսօր մեզնից յուրաքանչյուրի համար լիովին պարզ է. նա, ով սիրում է Բուլղարիան, սիրում է Սովետական Միությունը, նա, ով չի սիրում Սովետական Միությունը, չի սիրում և Բուլղարիան»:

ԲԿԿ-ն բուլղար ժողովրդի մարտական ավանգարդն է, երկրի հեղափոխական վերափոխությունների ղեկավար և ուղղություն տվող ուժը: Այն ժողովրդի ազգային լավագույն ավանդույթների կրողն է և աշխատավորության դարավոր երազանքների իրագործողը: Սոցիալիստական հասարակարգի կառուցման ընթացքում է՛լ ավելի է բարձրացել ԲԿԿ-ի՝ որպես բանվոր դասակարգի ու աշխատավոր ժողովրդի ղեկավարի դերը:

ԲԿԿ-ն լայն աշխատավորական զանգվածներին ու երիտասարդությանը դաստիարակում է սոցիալիստական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, խաղաղության, ժողովուրդների բարեկամության ու համագործակցության ոգով: Երիտասարդությունը բաց գիտակցում է, որ իր բաղձանքները կարող են իրագործվել միայն սոցիալիստական կարգերի պայմաններում, ուստի և մեծ էնտուզիազմով, ամբողջ ժողովրդի հետ միասին, կառուցում է նոր հասարակարգը: Ամուր է սոցիալիստական Բուլղարիայի բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության, սոցիալական մյուս խավերի բարոյա-քաղաքական միասնությունը: Ձեռք-ձեռքի տված՝ նրանք հաղթականորեն իրենց երկիրը առաջ են տանում կոմունիզմի լուսապայծառ ուղիով:

Բուլղար ժողովուրդն իր փառապանծ 30-ամյա հոբելյանը տոնում է տնտեսական, քաղաքական, կուլտուրական շինարարության ասպարեզում ձեռք բերած փայլուն հաջողություններով: Սոցիալիստական երկրների համերաշխ ընտանիքում Բուլղարիայի աշխատավորները կյանքի են կոչում այն մեծ կանխագծումները, որ նշել է Բուլղարիայի կոմունիստական կուսակցությունը:

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՎԵՐԱՓՈԽՈՒՄՆԵՐԻ ՈՒՂԻՈՎ

## (ՌՈՒՄԻՆԻԱՅԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ 30-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Ռ. Բ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

*Ժողովրդական Ռումինիան, սոցիալիստական համագործակցության մյուս երկրները հանդիսավորությամբ նշեցին ֆաշիզմի լծից Ռումինիայի ազատագրման 30-րդ տարեդարձը։*

*Ազատագրական պայքարի պատմության մեջ ռումին ժողովուրդը քիչ էջեր չի գրել։ Հերոսապատումներով լի այդ տարեգրության մեջ հատկապես առանձնանում, այլ իմաստ ու նշանակություն են ստանում 1944 թվականի օգոստոսի 23-ի իրադարձությունները, երբ ռումին ժողովուրդը պարզեց ապստամբության դրոշն ընդդեմ ֆաշիզմի և արտահայտեց դեմոկրատական զարգացման ուղիով ընթանալու իր անհողդողդ վճռականությունը։*

*Արևելյան Եվրոպայի իր դաշնակիցներից ֆաշիստական Գերմանիան առանձնահատուկ կարևորություն էր տալիս Ռումինիային։ Եվ դա պատահական չէր. Սովետական Միության դեմ նախապատրաստվող պատերազմում Ռումինիան հիտլերյան Գերմանիայի համար պետք է ծառայեր իբրև դաշնակից ու հուսալի պլացդարմ, իբրև հումքային կցորդ, որի նավթն ու գյուղատնտեսական մթերքները հիտլերականները մտադիր էին տնօրինել սեփական հայեցողությամբ։ Նման «լավատեսական հաշվարկների» համար ռայխը բավականաչափ հիմքեր ուներ։ Ռումինիայում արդեն իշխանության գլուխ էր անցել գեներալ Անտոնեսկուի ռազմա-ֆաշիստական կլիկը, որը, դեն նետելով բուրժուական դեմոկրատիայի վերջին մնացուկները և կատաղի տեռոր ծավալելով կոմունիստների ու հակաֆաշիստների դեմ, երկրի բախտը կապել էր «առանցքի» տերությունների հետ։ 1940 թվականի աշնանը, ռումինական զորքերի ուսուցման պատրվակով, Անտոնեսկուն գերմանական «տեսուչներ» հրավիրեց։ Առիթը բավականաչափ հարմար էր, և Գերմանիան, օգտվելով դրանից, փաստորեն օկուպացրեց ողջ Ռումինիան։ Դա ոչ միայն ռազմական, այլև տնտեսական օկուպացիա էր. երկրի էկոնոմիկան ամբողջովին պետք է հարմարեցվեր միլիտարիստական քաղաքականության պահանջներին։ Նրա կառավարմանը ակտիվորեն ներգրավվում էին գերմանացի մասնագետները։ 1940 թվականի նոյեմբերին Անտոնեսկուն Հիտլերին հավաստիացնում էր, թե արդեն եկող գարնանը ռումինական զորքը կազմ ու պատրաստ կլինի Սովետական Միության դեմ պատերազմելու համար։*

*Ներքաշելով երկիրն այդ հանցավոր պատերազմի մեջ, Անտոնեսկուի կլիկը հույս ուներ շովինիզմի սանձազերծմամբ մասսաների ուշադրությունը շեղել հեղափոխական պայքարից, ամրապնդել բուրժուա-կալվածատիրական կարգերը, իրականացնել ուրիշի տերիտորիաները զավթելու իր ցնորամիտ ծրագրերը։ Բայց այդ հաշիվներին վիճակված չէր իրականանալ։ Ավելին, պատերազմը բոլորովին հակառակ հետևանք ունեցավ. իրականում այն արագացրեց հեղափոխական պրոցեսը երկրում և, ի վերջո, հանգեցրեց ռազմաֆաշիստական դիկտատուրայի կործանմանն ու բուրժուա-կալվածատիրական իշխանության տապալմանը։*

*Պատերազմն անհամար զրկանքներ պատճառեց ռումին ժողովրդին։ Դեռ 1943 թ. հոկտեմբերին ֆաշիստական կլիկի պարագլուխը հայտնում էր «ֆյուրերին», թե ռումինական բանակն արդեն 250 հազար զինվոր է կորցրել ռազմաճակատում, իսկ պատերազմի վրա արված ծախսերը հասնում են 300 մլրդ*



*լեյի։ Ֆաշիստական Գերմանիայի հետ համագործակցելու հետևանքով Ռումինիայի կրած վնասը հավասար է բուրժուա-կալվածատիրական շրջանում այդ երկրի 12 տարվա պետական բյուջեին.*

*Արխիվներում պահպանվել են բազմաթիվ փաստաթղթեր այն մասին, թե ինչպիսի ատելությամբ էր ժողովուրդը վերաբերվում պատերազմին։ Արդյունաբերական խոշորագույն կենտրոններից մեկի՝ Պլոեշտիի ոստիկանության տեսուչը 1944 թ. սկզբին իր զեկուցագրում նշում էր, որ բանվորական զանգվածները գտնվում են կոմունիստական գաղափարների ազդեցության ներքո, որ նրանք մի առանձին ուշադրությամբ են հետևում պատերազմի ընթացքին և «մեծամասնությունը ուրախանում է ռայխի ռազմական հզորությունը թուլացնող ամեն մի փաստի համար։ Նրանց զրույցները միշտ կոմունիստների հնարավոր հաղթանակի շուրջն են պտտվում»։*

*Ժողովրդի ցասումն իր գագաթնակետին հասավ հատկապես այն բանից հետո, երբ Անտոնեսկուի կլիկը մերժեց հաշտություն կնքելու վերաբերյալ սովետական կառավարության 1944 թ. ապրիլի 12-ի առաջարկը։ Երկրի կուլտուրայի ու գիտության 69 ճանաչված գործիչներ այդ օրերին հանդես եկան կոլեկտիվ բողոքով, որտեղ վճռականորեն դատապարտում էին հակասովետական պատերազմը շարունակելու քաղաքականությունը։*

*Որքան սովետական զորքերը մոտենում էին Ռումինիայի սահմանին, այնքան ավելի էր խորանում ֆաշիստական ռեժիմի ճգնաժամը։ Ժողովրդական զանգվածների հեղափոխական ելույթների կազմակերպչի դերում հանդես էր գալիս Ռումինիայի կոմունիստական կուսակցությունը, որն ամբողջ 20 տարի գործում էր ընդհատակի ծանր պայմաններում։ Տակավին 1941 թ. հունվարին կուսակցությունն առաջ քաշեց խաղաղության ու ազգային անկախության իր պլատֆորմը, որտեղ ցույց էր տրվում, թե միայն «Սովետական Միության հետ սերտ բարեկամության քաղաքականությունը կարող է ռումին ժողովրդին փրկել իմպերիալիստական պատերազմի կործանարար հետևանքներից, երաշխավորել երկրի ազգային անկախությունը և ապահովել Ռումինիայի ժողովուրդների խաղաղությունը»։ Պատերազմի նկատմամբ իր վերաբերմունքը կոմունիստական կուսակցությունն արտահայտեց հատուկ մանիֆեստով, ուր մերկացվում էր ՍՍՀՄ-ի դեմ ֆաշիստական ագրեսիայի էությունը, ցույց էր տրվում, որ ՍՍՀՄ-ը վարում է ինտերնացիոնալ պատերազմ՝ հանուն ֆաշիզմի լծի տակ տառապող բոլոր ժողովուրդների ազատագրության։ Կուսակցության Կենտկոմը ժողովրդին կոչ էր անում ամեն կերպ աջակցել Կարմիր բանակի հաղթանակին, պայքարել օկուպանտներին երկրից դուրս շպրտելու, գերմանական ֆաշիզմի դրածոների իշխանությունը տապալելու համար։ Պատերազմն սկսվելուց ընդամենը երկու շաբաթ անց, 1941 թ. հուլիսի 8-ին, կոմունիստական կուսակցությունը իր անդամներին ուղղված շրջաբերական նամակում նշում էր, որ կոմկուսի «խնդիրն ու պատմական պարտքը սովետական մեծ ժողովրդի և մյուս ժողովուրդների հետ Ռումինիայի համատեղ պայքարի կազմակերպումն է՝ ընդդեմ գերմանական արյունարբու ֆաշիզմի ու մյուս երկրներում նրա դրածոների...»։ ՌԿԿ-ն եռանդուն պայքար է ծավալում դեմոկրատական հիմքի վրա ազգային միասնության ճակատի ստեղծման համար։ Այդ առթիվ 1941 թ. սեպտեմբերի 6-ին առաջ քաշած իր պլատֆորմում կուսակցությունը նշում էր. «Զենքը ձեռքին Հիտլերի բանակի դեմ պայքարելը յուրաքանչյուր ռումին հայրենասերի պարտքն է»։*

*Սովետական Միության դեմ պատերազմի սանձազերծմանը Ռումինիայի աշխատավորները պատասխանեցին հակաֆաշիստական պայքարի ուժեղացմամբ, ռազմական արդյունաբերության կազմալուծմամբ, կառավարական հանձնարարությունների ձախողմամբ։ «Յուրաքանչյուր օր նոր միջադեպեր ու հակահիտլերյան տարերային ելույթներ են ծագում, որոնք վկայում են, որ երկիրը զարթոնք է ապրում», պատերազմի սկզբին գրում էր «Ռումինիա լիբերա» թերթը։ Սովետական բանակի հաջողություններով ոգևորված, Ռումինիայի բանվոր դասակարգն ավելի ու ավելի էր համախմբում իր շարքերը՝ պատրաստվելով գալիք գոտեմարտերի։ Խոշոր քաղաքներում, հեղափոխական ավանդույթներ ունեցող ձեռնարկություններում կոմունիստների նախաձեռնու-*

թյամբ ստեղծվում էին մարտական հայրենասիրական ջոկատներ ու զենքի գաղտնի պահեստներ:

Պարտվողական տրամադրությունները գնալով համակում էին ռումինական բանակին: Ազգային պաշտպանության մինիստրության հրամաններից մեկում ուղղակի մտահոգություն էր հայտնվում այն կապակցությամբ, որ «հակաֆաշիստական տրամադրությունները թափանցում են սպաների մեջ»: Կոմունիստական կուսակցությունը բացատրական աշխատանք էր տանում նաև բանակում, որը, նպաստավոր իրավիճակի դեպքում, կարող էր դառնալ առաջադիմական ուժերի ռեզերվ:

Կարմիր բանակի պատմական հաղթանակները, ինչպես պետք էր սպասել, խոր ազդեցություն էին թողնում նաև ՍՍՀՄ-ում ռումին ռազմագերիների վրա, որոնք պատրաստակամություն էին հայտնում զենքը ձեռքներին պայքարելու ֆաշիզմի դեմ, օգնելու իրենց հայրենիքի ազատագրմանը: Նրանք հսկայական խանդավառությամբ ընդունեցին այն լուրը, որ սովետական կառավարությունը որոշել է ընդառաջ գնալ այդ հայրենասիրական ցանկությանը և թույլ տալ ՍՍՀՄ-ի տերիտորիայում կազմակերպելու ռումին կամավորների դիվիզիա: 1944 թ. գարնանը այդ դիվիզիան, որը կրում էր ժողովրդական ազատամարտության առաջնորդ Թուդոր Վլադիմիրեսկուի անունը, արդեն հանդես էր գալիս երկրորդ ուկրաինական ռազմաճակատում և սովետական զորամասերի հետ ուս-ուսի, մարտական հիանալի սխրագործություններով հավերժացրեց իր անունը:

1944 թ. օգոստոսի 20-ին սովետական զորքերը ճեղքեցին Յասսի—Քիշնևյան պաշտպանական գիծը և, ջախջախելով այստեղ ամրացված 900 հազարանոց ֆաշիստական զորամիավորումները, սրընթաց առաջ շարժվեցին դեպի Ռումինիայի խորքերը: Սովետական բանակի հարձակումը մեծ չափով արագացրեց երկրում հեղափոխական իրադարձությունների զարգացման պրոցեսը: Օգոստոսի 23-ին, ՌԿԿ-ի կողմից նախապես մշակված պլանի համաձայն, ձերբակալվեցին Անտոնեսկուն և նրա կառավարության անդամները: Դա ծառայեց իբրև ընդհանուր ապստամբության ազդանշան: Նույն օրը, երեկոյան Բուխարեստի ռադիոն հաղորդեց ռազմա-ֆաշիստական դիկտատուրայի տապալման, միավորված ազգերի դեմ ռազմական գործողությունների դադարեցման, հաշտության վերաբերյալ սովետական կառավարության առաջարկած պայմանների ընդունման մասին: Դրանից անմիջապես հետո ռումինական բանակը դադարեցրեց կրակը սովետական զորքերի դեմ, իսկ թիկունքում գտնվող նրա միավորումները, հայրենասիրական ջոկատների հետ, գրավեցին Բուխարեստի գլխավոր ստրատեգիական կետերը:

Անտոնեսկուի անփառունակ վախճանը ցնցող տպավորություն գործեց Գերմանիայի կառավարող շրջաններում: Ռումինիայում հիտլերյան դեսպան ֆոն Կիլինգերը, որը դրանից ընդամենը մի քանի օր առաջ պարծենում էր, թե առանց իր գիտության այդ երկրում «տերև անգամ չի շարժվի», ստիպված էր ինքնասպան լինել:

Օգոստոսի 24-ին Ռումինիան պատերազմ հայտարարեց Գերմանիային: Մի քանի օր անց Բուխարեստն արդեն ամբողջովին ազատագրված էր հիտլերականներից: Հակաֆաշիստական տրամադրություններն այնպես էին համակել ամենքին, որ նույնիսկ Անտոնեսկուի անձնական պահպանության գունդն անմիջապես անցավ ապստամբների կողմը:

Ռազմաճակատում ամեն ինչ բարեհաջող էր ընթանում, մինչդեռ երկրի ներքաղաքական կյանքն աչքի էր ընկնում ծայրահեղ լարվածությամբ: Ռումինական ռեակցիան տենդագին գործունեություն էր ծավալել՝ հասնելու համար այն բանին, որպեսզի երկիրը օկուպացվի անգլո-ամերիկյան զորքերի կողմից: Դրանում էին նրանք տեսնում իրենց փրկությունը: Եվ եթե այդ պլանները չիրականացան, ապա դրանում վճռական դեր խաղաց Ռումինիայում սովետական զորքերի առկայության բուն փաստը՝ հանգամանք, որ ինքնին զսպող ներգործություն էր ունենում ռեակցիայի վրա: Երկրում իրավիճակը բարդանում էր և նրանով, որ ռեակցիան դեռևս բավական ամուր հենարան ուներ կառա-



վարության մեջ ու պետական ապարատում, որտեղ գերակշռում էին բուրժուազիայի ու կալվածատիրության ներկայացուցիչները:

Եվ, այնուամենայնիվ, գնալով ավելի տիրապետող էին դառնում այն գործոնները, որոնք պետք է նպաստեին երկրի հասարակական ու քաղաքական կյանքի դեմոկրատացմանը: Ռումինիայի կոմունիստական կուսակցությունը, երկրի առաջադիմական ուժերի գլուխ անցած, վճռական պայքար սկսեց ֆաշիզմի մնացուկների լիկվիդացման, իշխանության նվաճման, դեմոկրատական կարգերի հաղթանակի համար: 1945 թ. հունվարին ազգային-դեմոկրատական ճակատը կոմունիստական կուսակցության նախաձեռնությամբ հանդես եկավ իր նոր ծրագրով, որտեղ առաջադրվում էին երկրում սոցիալ-տնտեսական ռեֆորմներ անցկացնելու, հասարակական-քաղաքական կյանքը դեմոկրատացնելու արմատական պահանջներ: Ծրագիրն աշխատավորությանը կոչ էր անում ակտիվորեն պայքարել հեղափոխական-դեմոկրատական այնպիսի կառավարություն ստեղծելու համար, որն ի վիճակի լինի իրականացնել այդ վերափոխումները: Փետրվարին կոմկուսը կալվածատիրական հողերը բռնագրավելու և բաժանելու կոչով դիմեց գյուղացիությանը: Այն կայծակի արագությամբ տարածվեց ողջ երկրով մեկ: Մի քանի շաբաթվա ընթացքում Ռումինիայի նահանգների մեծ մասում գյուղացիներն ավարտեցին հողերի բռնագրավումն ու բաժանումը: Այդ ամենը, իհարկե, ուղեկցվում էր կալվածատերերի կատաղի դիմադրությամբ, ոստիկանության հետ լուրջ բախումներով, բայց գյուղացիության թիկունքին կանգնած էր բանվոր դասակարգը, որն իր հուժկու ձայնը բարձրացրեց ի պաշտպանություն հողի աշխատավորների արդար իրավունքների:

Ժողովրդական լայն զանգվածների համար գնալով ավելի ակնհայտ էր դառնում, որ բուրժուական կառավարությունից սոցիալ-տնտեսական ու քաղաքական լուրջ վերափոխումներ սպասելը պարզապես անիմաստ է: Պրեմիեր-մինիստր Ռադեսկուն նույնիսկ սպառնաց քաղաքացիական պատերազմով, որին ժողովուրդը պատասխանեց հզոր ցույցերով և կառավարության հրաժարականի պահանջով:

1945 թ. մարտի 6-ին Ռումինիայում հաստատվեց ժողովրդա-դեմոկրատական իշխանություն: Նորաստեղծ կառավարությունը, որի գլուխ կանգնած էր ականավոր քաղաքական գործիչ Պետրու Գրոզան, առաջին իսկ օրերից ձեռնամուխ եղավ դեմոկրատական այնպիսի ռեֆորմների անցկացմանը, որոնք մտնում էին ժողովրդական հեղափոխության առաջին փուլի խնդիրների մեջ: Հեղափոխության զարգացման համար հսկայական կարևորություն ունեցավ ագրարային ռեֆորմի անցկացումը, որի շնորհիվ կալվածատերերից բռնագրավվեց 1,5 մլն հեկտար հող և բաժանվեց 900 հազար հողազուրկ կամ սակավահող գյուղացիների: Ագրարային ռեֆորմը լրջորեն խարխլեց ռեակցիայի տնտեսական հիմքերը, գյուղական բնակչության լայն զանգվածներին ամուր թելերով կապեց հեղափոխությանը, ցեմենտեց բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դաշինքը:

Աղքատիկ էր անցյալից նոր Ռումինիայի ստացած ժառանգությունը: Երկրի առանց այն էլ հետամնաց էկոնոմիկան ամբողջովին քայքայվել էր պատերազմի հետևանքով: Կոմունիստական կուսակցությունը և դեմոկրատական կառավարությունը մեծ ջանքեր գործադրեցին տնտեսական կյանքի կարգավորման համար և արդեն 1945 թ. այդ նպատակով իրականացրին մի շարք կարևոր միջոցառումներ: Ռումինիայի էկոնոմիկայի վերականգնմանը մեծ օգնություն էր ցույց տալիս Սովետական Միությունը: Իր համար ևս ծանր այդ օրերին ՍՍՀՄ-ը օգնեց Ռումինիային վերականգնելու երկաթուղիները, մեծ թվով վագոններ տրամադրեց նրան: Խորհրդանշական մի «մանրուք». ազատագրված Ռումինիայի առաջին գարնանացանին երկրի դաշտերն ակոսում էին սովետական 500 տրակտորներ, ռումին գյուղացիների հետ դաշտային աշխատանքներին մասնակցում էին այստեղ գտնվող սովետական հազարավոր զինվորներ:

1945 թ. հոկտեմբերին կոմունիստական կուսակցության պատվիրակները հավաքվեցին երկրի ազատագրումից հետո իրենց առաջին համառումինական

ձավ արդյունաբերության ու տրանսպորտի ասպարեզում, գյուղատնտեսության մեջ ևս անշեղորեն աճում էր նրա տեսակարար կշիռը: Այդ շրջանում գրեթե լիովին վերացվեց անգրագիտությունը, մտցվեց 7-ամյա ընդհանուր պարտադիր կրթություն: Հաջորդ հնգամյակում կուսակցության ու ժողովրդի ջանքերն ուղղված էին միասնական սոցիալիստական տնտեսություն ստեղծելու նպատակին, և այդ խնդիրը նույնպես լուծվեց հաջողությամբ: 1960 թ. կուսակցության համագումարը նշեց, որ Ռումինիան արդեն ավարտել է սոցիալիզմի բազայի կառուցումը և թևակոխում է զարգացման ավելի բարձր փուլ՝ սոցիալիզմի կառուցումն ավարտելու շրջանը: Որակական նոր փոփոխություններ կրեց երկրի արդյունաբերությունը, որի առաջատար ճյուղերը դարձան քիմիան, էներգետիկան, մեքենաշինությունը, սև մետալուրգիան...

Սոցիալիստական Ռումինիայի էկոնոմիկայի զարգացումը միշտ բնութագրվել է բարձր տեմպերով, բայց այդ առումով հատկանշական են մանավանդ վերջին տարիները: Եթե առաջին հնգամյակում կապիտալ ներդրումները կազմում էին 62 մլրդ լեյ, ապա ընթացիկ հնգամյակում (1971—1975 թթ.) դրանք աճել են գրեթե 9 անգամ և հասնում են 540 մլրդ լեյի: Արդյունաբերական արտադրանքի նախապատերազմյան մակարդակը գերազանցված է 25 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը, 1938 թ. 1,1 մլրդ կիլովատ-ժամի դիմաց, 1973 թ. հասավ 46,7 մլրդ կիլովատ-ժամի: Խոր փոփոխություններ է կրել ժողովրդական տնտեսության կառուցվածքը: Ազգային եկամտի մեջ արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը, 1938 թվականի 30,8-ի փոխարեն, 1973 թ. կազմեց 58,5 տոկոս: 1974 թ. սկզբին երկրի ժողովրդական տնտեսության մեջ ընդգրկված էին 5,8 մլն բանվոր ու ծառայող: Յուրաքանչյուր 18 բանվորին այստեղ ընկնում է բարձրագույն կրթությամբ մեկ մասնագետ: Այս ցուցանիշով Ռումինիան կանգնած է բարձր զարգացած արդյունաբերական երկրների շարքում: Անշեղորեն իրագործվում է ժողովրդի կենսամակարդակի բարձրացման լայն ծրագիրը: 1947 թ. համեմատությամբ ազգային եկամուտն ավելացել է 12, իսկ բանվոր-ծառայողների ռեալ աշխատավարձը՝ 5 անգամ: Վերջին 30 տարում Ռումինիայի ազգաբնակչությունն ավելացել է 5,5 մլն մարդով:

Երկրի ինդուստրացմամբ անհրաժեշտ պայմաններ ստեղծվեցին նաև գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումն ավարտելու համար: Նախկին մասնատված տնտեսությունների փոխարեն հիմնվեցին հզոր պետական գյուղատնտեսական ձեռնարկություններ ու արտադրական կոոպերատիվներ, ստեղծվեց ժամանակակից գյուղատնտեսություն, որն ի վիճակի է բավարարելու երկրի օրավուր աճող պահանջները: Մեծ ուշադրություն է նվիրվում էկոնոմիկայի այս առաջատար ճյուղերից մեկի ձեռնարկությունների և տնտեսությունների մասնագիտացմանն ու կոոպերացմանը՝ ելնելով տվյալ գոտու առանձնահատկություններից: Այժմ երկրի դաշտերում աշխատում են ավելի քան 115 հազար տրակտոր, 45 հազար կոմբայն: Միայն ընթացիկ տարում գյուղատնտեսությունը երկրի արդյունաբերությունից կստանա 14.300 տրակտոր, 4.000 ինքնագնաց կոմբայն, բազմաթիվ այլ մեքենաներ: Ռումինիան այժմ տարեկան 3,5 անգամ ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ է արտադրում, քան նախապատերազմյան շրջանում: Սոցիալական նոր որակ է իրենից ներկայացնում Ռումինիայի գյուղացիությունը, որը, անցնելով հեղափոխական վերափոխումների պրոցեսը, չէր կարող չկրել դրա խոր ազդեցությունը: Այժմ այն աչքի է ընկնում իր կազմի միատարրությամբ, հասարակական իդեալների միասնությամբ, մասնագիտական ու կուլտուրական պատրաստությամբ:

Տնտեսական կյանքի արմատական վերափոխումները համապատասխան շտկումներ մտցրին նաև կառավարման ստրուկտուրայում. երկիրը բաժանվեց վարչական-տերիտորիալ նոր շրջանների, կատարելագործվեց արդյունաբերության կազմակերպման կառուցվածքը, ձեռնարկություններում իրականացվում են կոլեկտիվ ղեկավարության նոր եղանակներ: Ստեղծվել են կուսակցական-պետական մի շարք մարմիններ, նպատակահարմար է ճանաչվել նույն անձի ձեռքում համատեղել կուսակցական ու պետական պոստերը:

Դեռ 1965 թ. Ռումինիայի կոմունիստական կուսակցության IX համագումա-



րը (այդ համագումարից հետո կուսակցությունը վերանվանվեց իր նախկին անունով) արձանագրեց, որ սոցիալիստական արտադրահարաբերություններն արդեն ամբողջապես հաղթանակել են քաղաքում և գյուղում: Նույն թվականին ընդունված նոր սահմանադրությունը պետությունը նոր անունով կոչեց՝ Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետություն: Սոցիալիստական շինարարության ավելի բարձր փուլ նշանավորեց ՌԿԿ X համագումարը, որն առաջ քաշեց բազմակողմանի զարգացած սոցիալիստական հասարակարգ կառուցելու խնդիրը:

Բոլորովին վերջերս հրապարակվեց ՌԿԿ՝ նոյեմբերին կայանալիք XI համագումարի դիրեկտիվների նախագիծը հերթական հնգամյա պլանի և 1981—1990 թթ. երկրի զարգացման գլխավոր ուղղությունների վերաբերյալ: Ռումինիան իր նոր կյանքի չորրորդ տասնամյակն է թևակոխում բազմակողմանի զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման պայծառ հեռանկարներով:

Համագումարը միաժամանակ կքննարկի ՌԿԿ նոր ծրագրի նախագիծը, որտեղ իր արտացոլումը կգտնի կոմկուսի հեռանկարային քաղաքականության (առաջիկա 25 տարվա համար) ստրատեգիական գիծը:

Ինչպես սոցիալիզմի մյուս երկրների, այնպես էլ Ռումինիայի աշխատավորների ձեռք բերած պատմական հաղթանակների մեջ կա նաև սոցիալիստական համագործակցության մյուս երկրների, մասնավորապես Սովետական Միության պատկառելի ավանդը: Ռումինիան Տնտեսական փոխօգնության խորհրդի՝ սոցիալիստական երկրների առաջին միջպետական տնտեսական կազմակերպության հիմնադիր անդամներից է: ՌՍՀ-ն ակտիվորեն մասնակցում է սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի հետագա խորացման կոմպլեքսային ծրագրի իրագործմանը, որը Ռումինիային հնարավորություն է ընձեռում լայնորեն օգտվելու աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման, սոցիալիզմի երկրների կոլեկտիվ համագործակցության առավելություններից: ՌՍՀ-ն խորհրդի այն երկրներից է, որոնք աչքի են ընկնում տնտեսության տարբեր ճյուղերի զարգացման առավել բարձր տեմպերով: Սոցիալիստական երկրների հետ ՌՍՀ-ի տնտեսական համագործակցության խորացումը սերտորեն կապված է արտադրական կոոպերացումն ընդլայնելու, ՏՓԽ-ի անդամ-երկրների համատեղ ինտեգրացիոն միջոցառումներին մասնակցելու հետ: Ինչպես նշվում է ՌԿԿ առաջիկա համագումարի դիրեկտիվների նախագծում, Ռումինիան իր ավանդը կմուծի սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի կոմպլեքսային ծրագրի կատարման գործում, կնպաստի այդ կազմակերպության կանոնադրության սկզբունքների հիման վրա ՏՓԽ-ի շրջանակներում համագործակցության ինտենսիվացման, խորհրդի անդամ-երկրներից յուրաքանչյուրի առավել արագ ու ներդաշնակ զարգացման, հանուն սոցիալիստական երկրների տնտեսական զարգացման մակարդակների հավասարեցման պրոցեսի արագացմանը:

Անշեղորեն զարգանում է Ռումինիայի և Սովետական Միության տնտեսական ու գիտատեխնիկական համագործակցությունը: Հետպատերազմյան շրջանում ՍՍՀՄ-ի գործուն աջակցությամբ ՌՍՀ-ում կառուցվել են ավելի քան 100 արդյունաբերական ձեռնարկություն, որոնք հանրապետության տնտեսական կյանքում այսօր որոշիչ դեր ունեն: Երկու երկրների կապերի հետագա զարգացմանը մեծ չափով նպաստում է 1966 թ. ստեղծված սովետա-ռումինական տնտեսական համագործակցության հանձնաժողովը: Վերջին ժամանակներս կնքված համաձայնագրերին համապատասխան ՍՍՀՄ-ը Ռումինիային սարքավորումներ է մատակարարում քիմիական ու մետալուրգիական ձեռնարկությունների, էներգետիկայի օբյեկտների համար: Իր հերթին Ռումինիան ակտիվորեն աջակցում է մեր երկրում երկաթաքարի արդյունահանման զարգացմանը, որը հնարավորություն կտա ավելացնելու ՍՍՀՄ-ից ՌՍՀ-ին մատակարարվող հանքաքարի ծավալը: Եղբայրական մյուս երկրների հետ ՌՍՀ-ն կմասնակցի Ուստ-Իլիմի ցելյուլոզի-թղթի ու Կիեմբաևի ասբեստի լեռնահարստացուցիչ կոմբինատների և այլ ձեռնարկությունների շինարարությանը:

Սովետական Միության և Ռումինիայի միջև հաստատվել ու զարգանում են բարեկամության և ընկերական համագործակցության սերտ հարաբերություն-

ներ: Ռումինիայի կոմկուսը քանիցս ընդգծել է այն մեծ կարևորությունը, որ երկրի էկոնոմիկայի զարգացման համար ունեն ՍՍՀՄ-ի հետ տնտեսական կապերը: ՍՍՀՄ-ի և Ռումինիայի դաշնակցային հարաբերությունների ամրապնդման գործում կարևոր քայլ էր երկու երկրների միջև բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության վերաբերյալ պայմանագրի ստորագրումը, որ տեղի ունեցավ 1970 թվականին:

Անդամագրվելով սոցիալիստական համագործակցության մեծ ընտանիքին, Ռումինիան իր դարավոր պատմության մեջ առաջին անգամ չորս կողմից շրջապատվեց բարեկամ պետություններով: ՌՍՀ-ն Վարշավայի պայմանագրի անդամ է, նրա անվտանգությունն ու սահմանների անձեռնմխելիությունը երաշխավորված են այդ կազմակերպության անդամների ռազմա-քաղաքական ողջ հզորությամբ:

«Իբրև սոցիալիստական երկիր,— գրում է ՌԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, հանրապետության պրեզիդենտ Ն. Չաուշեսկուն,— Ռումինիան առանձնահատուկ նշանակություն է տալիս սոցիալիստական բոլոր պետությունների հետ բարեկամության և քաղաքական, տնտեսական, գիտա-տեխնիկական ու կուլտուրայի բնագավառներում բազմակողմանի համագործակցության ամրապնդմանը, նրանց միջև ստեղծված նոր տիպի հարաբերությունների կոնսոլիդացմանը, որոնք հենվում են մարքսիզմ-լենինիզմի և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա, վստահության, փոխադարձ հարգանքի, նոր հասարակարգի կառուցման գործում ընկերական փոխօգնության վրա: Մենք տնտեսական, գիտատեխնիկական և կուլտուրական լայն համագործակցություն ենք ծավալում Սովետական Միության հետ, որը Ռումինիայի արտաքին առևտրի մեջ զբաղեցնում է գլխավոր տեղը, ինչպես նաև մյուս սոցիալիստական երկրների հետ, գտնելով, որ դա ազգային էկոնոմիկաներից յուրաքանչյուրի ծաղկման, սոցիալիզմի ընդհանուր բարգավաճման կարևոր գործոնն է» («Պրավդա», 1974 թ., № 234):

Սովետական ժողովուրդը, սոցիալիստական համագործակցության մյուս երկրների ժողովուրդները համոզված են, որ Ռումինիան, ինչպես նշում է ընկ. Ն. Չաուշեսկուն, «լի է վճռականությամբ հետագայում ևս իր ավանդը մուծելու սոցիալիստական երկրների միջև հարաբերությունների զարգացման ու կատարելագործման, նրանց միասնության ամրապնդման, արդի համաշխարհային զարգացման վրա սոցիալիզմի ազդեցության աճի գործում»:

Սովետական Միության և Ռումինիայի ժողովուրդները միմյանց հետ կապված են դարերից եկող բարեկամությամբ, շահերի ու նպատակների ընդհանրությամբ: Նշելով եղբայրական Ռումինիայի 30-ամյա հոբելյանը, սովետական ժողովուրդը վստահ համոզմունք է հայտնում, որ սովետա-ռումինական բարեկամությունն այսուհետև էլ ավելի կամրապնդվի՝ հանուն մեր երկու երկրների ժողովուրդների բարօրության, հանուն սոցիալիստական համագործակցության և միջազգային կոմունիստական շարժման հետագա միասնության:

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



## ԱՌԱՋԻՆ ԱՌԺՈՂԿՈՄԸ

**Ն. Ա. ՍԵՄԱՇԿՈՅԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ**

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը կազմել էին առողջապահության գիտականորեն հիմնավորված ծրագիր, որը պետք է կենսագործվեր սոցիալիստական հիմունքներով, հաստատելով աշխատավորության առողջական վիճակի ուղղակի կապը հասարակարգի հետ: Դրանով իսկ հիմնավորվեց այն օբյեկտիվ տեսակետը, որ բնակչության լայն մասսաների առողջական վիճակը և առողջապահությունն ունեն սոցիալական պայմանավորվածություն: Մեր երկրում ժողովրդի առողջապահության պահպանման պետական սիստեմը, որպես սոցիալիզմի մեծագույն նվաճումներից մեկը, ստեղծվել է Վ. Ի. Լենինի անմիջական ղեկավարությամբ, նրա կողմից մշակված գիտական-կազմակերպչական հիմունքներով: Վլադիմիր Իլյիչը, չնայած սաստիկ ծանրաբեռնվածությանը, միշտ էլ մեծ ուշադրություն է նվիրել առողջապահության ոլորտի տարբեր օղակների գործունեությանը: Հեղափոխության առաջնորդն առողջապահության պրոբլեմները դիտում էր անմիջականորեն շաղկապված այն ընդհանուր հարցերի հետ, որոնք ծառացած էին բանվոր դասակարգի առջև. նա գտնում էր, որ դրանք լուծելի են միայն սոցիալիստական հասարակարգում. «Առանց Լենինի պաշտպանության հազիվ թե մեզ մոտ ստեղծվեր միասնական բժշկություն, այնքան շատ էին սկզբում այդ գաղափարների թշնամիները». այս տողերի հեղինակը՝ կոմունիստական կուսակցության և սովետական պետության ակա-

նավոր գործիչ Նիկոլայ Ալեքսանդրովիչ Սեմաշկոն, առաջնորդի զինակիցներից էր, սովետական առողջապահության սիստեմի ստեղծման և նրա հետագա զարգացման մեծ երախտավորներից մեկը: Աշխատելով Լենինի անմիջական ղեկավարությամբ, մեր երկրի առաջին առժողկոմ Ն. Ա. Սեմաշկոն իր ուրույն տեղն է գրավել սոցիալիստական առողջապահության պատմության մեջ: Հմուտ կազմակերպիչը, անվանի գիտնականը, տեսաբանն ու մանկավարժը չափազանց դժվարին ու բարդ պայմաններում, իր բազմակողմանի, արդյունավետ գործունեությամբ, ո՛չ միայն նոր տիպի առողջապահության հիմնաքարերը դրեց, այլև մեծապես նպաստեց դրա հետագա վերընթացին: Այժմ էլ իրենց ուժն ու նշանակությունը չեն կորցրել այն հիմնադրույթները, որոնք ժամանակին տեսականորեն մշակվել և պրակտիկայում կիրառվել են Նիկոլայ Ալեքսանդրովիչի կողմից:

Ն. Ա. Սեմաշկոյի կյանքն ու գործունեությունը կարելի է բաժանել երեք, միմյանց լրացնող մասերի— պրոֆեսիոնալ բոլշևիկ, սովետական առողջապահության բոլշևիկ-կազմակերպիչ, բոլշևիկ-գիտնական:

Օրլովի նահանգի Ելեցկ գավառի Լիվենսկ գյուղում, ուսուցչի ընտանիքում է ծնվել Նիկոլայ Ալեքսանդրովիչը, 1874 թ. սեպտեմբերի 20-ին: Պատանեկան տարիներից սկսած, նա իր ճակատագիրն ընդմիշտ կապում է ցարիզմի դեմ, իր հայրենիքի լուսավոր ապագայի համար ժողովրդի մղած հեղափոխական պայքարի հետ: Ելեցկի գիմնազիայում նա ստեղծում է գաղտնի խմբակ, որի մասնակիցները ուսումնասիրում են քաղաքական արգելված գրականություն: 1891 թ. Մոսկվայի համալսարանի բժշկական ֆակուլտետի ուսանող էր Սեմաշկոն և կրկին՝ հեղափոխական գործունեության հորձանուտում:

Լույս էր տեսել Վլադիմիր Իլյիչի **Ի՞նչ են ժողովրդի «բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ** գիրքը, որն արտագրվում, տպագրվում էր հեկտոգրաֆով, տարածվում առաջադեմ ուսանողության շրջանում: «Ես սիրում էի Լենինի այդ աշխատությունը,— կարդում ենք այդ տարիների մասին Սեմաշկոյի գրած հիշողություններում,— այն ինձ դարձրեց մարքսիստ-լենինյան»: Հետաքրքրական է, որ այդ թվականների մասսայական ձերբակալությունների ժամանակ ձեռքից-ձեռք էր փոխանցվում աշխատությունը, և ոստիկանությանը ոչ մի կերպ չհաջողվեց բռնագրավել այն, ոչնչացնել:

Ձերբակալությունները հաջորդում էին իրար, և 1895 թ., նոյեմբերյան մի գիշեր ոստիկանությունը ծեծեց և նրա դուռը. «...հասկացա, որ ձերբակալության հերթն ինձ է հասել,— գրում է նա:— Մինչ տանտերս՝ Նովիկովը, զրուցում էր անկոչ այցելուների հետ, ես աշխատեցի ոչնչացնել ինձ մոտ եղած գաղտնագրերը: Հացեակիր փոքրիկ գրությունը կուլ տվի, ավելի մեծը, որ պարունակում էր զեկուցման թեզիսները, պատառոտեցի և նետեցի լվացարանի տակի դույլի մեջ: Բարեբախտաբար, կոկորդս ցավում էր, և ես այն ողողել էի բերտոլետյան աղով, որն ունի գունաթափող հատկություն: Ոստիկանները դույլից հանում էին թղթի կտորները, քամում և դասավորում սեղանի վրա. գրվածը գունաթափվել, թանաքը լուծվել էր, և այդպես էլ նրանք չկարողացան ոչինչ կարդալ»: Սեմաշկոյին էլ ձերբակալում են. գիրք ստանալու թույլտվությունն զգալիորեն թեթևացնում է նրա վիճակը: «Բանտում ես մշակեցի Մարքսի և Ռիկարդոյի Ռենտայի տեսությունը, զբաղվում էի քաղաքատնտեսությամբ, ուսումնասիրեցի Մարքսի **Կապիտալը**, Հեգելի **Տրամա**-



**բանությունը** և այլն: Մոսկովյան բանտը, այսպիսով, դարձավ իմ համալսա-
րանը»,— գրում է նա:
Ծուտով նա արտաքսվում է Մոսկվայից: Երկու տարի աքսորում անց-
կացնելուց հետո տեղափոխվում է Կազան, ընդունվում տեղի համալսարանի
բժշկական ֆակուլտետը: Կազանի համալսարանում ղեկավարում է ընդհա-
տակյա մարքսիստական բանվորական խմբակները, գրում հեղափոխական
կոչեր, մասնակցում բանվորական ցույցերին: 1901 թ. որպես բժիշկ աշխա-
տում է Օրլովի և Սամարայի գավառներում: Սեմաշկոն շարունակում է վարել
հեղափոխական աշխատանք և մարքսիստական պրոպագանդա: 1904 թ. տե-
ղափոխվում է Նիժնի Նովգորոդ, դառնալով տեղի բանվորական մարքսի-
տական խմբակների կազմակերպիչներից ու ղեկավարներից մեկը: 1905 թ.
հեղափոխական շարժմանն ակտիվ մասնակցելու, ապստամբած բանվորներին
բուժօգնություն ցույց տալու համար Ն. Ա. Սեմաշկոն կրկին ձերբակալվում է.
նկատի առնելով առողջական վիճակը, ինն ամիս անց նա ազատվում և մեկ-
նում է Ժնև (Շվեյցարիա), որտեղ 1907 թ. առաջին անգամ հանդիպում է
Վ. Ի. Լենինին: Այստեղ էլ նա ծավալում է կուսակցական լայն գործունեու-
թյուն. շվեյցարական իշխանությունները ձերբակալում և ցանկանում են ցա-
րական կառավարությանը հանձնել անկուն մարքսիստին:
Բանտից դուրս գալուց հետո Սեմաշկոն տեղափոխվում է Փարիզ, ուր
դառնում է կուսակցության Կենտկոմի արտասահմանյան բյուրոյի քարտու-
ղար: Նա եղել է Շտուտգարդի միջազգային սոցիալիստական կոնգրեսի
պատգամավոր, 1912 թ. մասնակցել ՌՍԴԲԿ Համառուսաստանյան VI կոն-
ֆերանսին (Պրագայի): Այստեղ նա հանդես է գալիս բանվորների պետական
ապահովագրության հարցին նվիրված ճառով. այդ առթիվ կոնֆերանսի մաս-
նակիցների ընդունած նախագիծը հետագայում դարձավ բոլշևիկյան կուսակ-
ցության՝ բանվորների սոցիալական ապահովագրման ծրագրի հիմքը:
1917 թ. սեպտեմբերին, վերադառնալով Մոսկվա, Սեմաշկոն բժիշկ-բոլ-
շևիկներ Մ. Մ. Վլադիմիրովսկու, Ի. Վ. Ռուսակովի, Զ. Պ. Սոլովյովի, Վ. Ա.
Օբուխի հետ մեկտեղ ձեռնամուխ եղավ կուսակցական գործունեության: Բոլ-
շևիկյան ֆրակցիայի կողմից Սեմաշկոն ընտրվել է Մոսկվայի Պյատնիցկու
շրջանային վարչության նախագահ, մասնակցել շրջանային դումաների սովե-
տի աշխատանքներին: Զինված ապստամբության նախապատրաստման ակ-
տիվ մասնակիցներից մեկն է նա. նոյեմբերյան կռիվների փոթորկածուփ
օրերին նրա ջանքերով է կազմակերպվում կարմիրգվարդիականների ու զին-
վորների բուժսպասարկումը Մոսկվայում:
1893 թվականից Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական կուսակցության
անդամագրված անդուլ գործչին բնավ չեն ընկճել ձերբակալություններն ու
աքսորները, կյանքի ու գործունեության ծանր պայմանները. մեծ նվիրվածու-
թյամբ նա պայքարել է հանուն սոցիալիստական հեղափոխության հաղ-
թանակի: Հեղափոխությունից հետո, երբ մարդկության պատմության մեջ
առաջին անգամ հնարավորություն ստեղծվեց լուծելու լայն մասսաների առող-
ջության պահպանման հարցերը՝ որպես պետական սոցիալ-քաղաքական մեծ
պրոբլեմ, նոր թափով ծավալվեց Ն. Ա. Սեմաշկոյի բազմակողմանի, արդյու-
նավետ գործունեությունը: Սովետական իշխանության հաստատման առաջին
տարիներին և սոցիալիստական շինարարության հետագա բոլոր փուլերում
նա ակտիվ մասնակցում է երկրի կուսակցական, պետական ու հասարակա-

կան կյանքին, իր ողջ ուժն ու եռանդը նվիրում նոր հասարակարգի կերտմանն ու բարգավաճմանը:

1918 թ. մայիսին նա նշանակվում է բանվորների և զինվորների՝ Մոսկվայի սովետի բժշկա-սանիտարական բաժնի վարիչ: Հուլիսին ՌՍՖՍՀ ժողկոմխորհի դեկրետով, որն ստորագրել էր Վ. Ի. Լենինը, ստեղծվում է առողջապահության ժողովրդական կոմիսարիատ. այն, որպես կենտրոնական օրգան, ղեկավարում էր երկրի բժշկա-սանիտարական ողջ գործը: Ն. Ա. Սեմաշկոն նշանակվում է ՌՍՖՍՀ-ի առաջին առժողկոմ: Նորաստեղծ առժողկոմատն իր գործունեությունն սկսում է չափազանց ծանր, բարդ պայմաններում, երբ զինված պայքար էր մղվում իմպերիալիստական ինտերվենցիայի, ներքին հակահեղափոխականների դեմ: Երկրի էկոնոմիկան քայքայված էր, ամենուր զգացվում էր պարենամթերքի սուր կարիք: Բնակչության մեջ լայնորեն տարածվում էին համաճարակային հիվանդությունները, հատկապես՝ պարազիտար տիֆերը: Քիչ էին բուժհիմնարկները, սակավ՝ բժշկական կադրերը, հատկապես երկրի հեռավոր, գյուղական վայրերում: Այդպիսի դժվարին իրադրության մեջ էր ստեղծվում սովետական առողջապահությունը, որը, ինչպես նըշում էր Ն. Ա. Սեմաշկոն, արմատապես տարբերվում է կապիտալիստականից: Սոցիալիստական հասարակարգում առողջապահությունը կրում է պետական բնույթ, ունի սոցիալ-պրոֆիլակտիկ թեքում: Հիմնադրվում է բնակչության ձրի բուժսպասարկումը. հասարակական կազմակերպությունները, լայն մասսաները անմիջականորեն մասնակցում են առողջապահության գործին: Սեմաշկոն սիրում էր այդ առիթով հիշել Մ. Ի. Կալինինի խոսքերը, որ միաժամանակ իր համոզմունքի արտահայտությունն էին. «Մեզ մոտ, սոցիալիստական երկրում, աշխատավորության և գյուղացիության առողջությունը պետության հիմնական հոգսն է»: Բնակչության առողջության պահպանման և առողջապահության պրոֆիլակտիկ ուղղության հարցերում մեծ նշանակություն հատկացնելով բժշկա-սանիտարական միջոցառումներին, նորաստեղծ պետության քաղաքների, բնակավայրերի, արտաքին միջավայրի բարելավմանն ու առողջացմանը, Նիկոլայ Ալեքսանդրովիչը դրա հիմքը համարում էր սովետական պետության ձեռնարկած սոցիալ-տնտեսական այն միջոցները, որոնց շնորհիվ պետք է վերափոխվեին ժողովրդի կյանքի և աշխատանքային պայմանները. «Սանիտարական գործունեության ծաղկումը հնարավոր է միայն աշխատավոր մասսաների սոցիալ-տնտեսական և կուլտուրայի բարելավման հիման վրա»: «Սոցիալիզմը—դա առողջություն է»,— գրել է Սեմաշկոն:

Առժողկոմը Լենինին է ուղարկել բնակարանների բարելավման վերաբերյալ **Կանոնադրությունը.** միլիարդներ են հատկացվել այդ նպատակի իրականացմանը (և միայն 2 **մլրդ**՝ Մոսկվային): Հետաքրքրական է այդ առթիվ Վլադիմիր Իլյիչի՝ Նիկոլայ Ալեքսանդրովիչին ուղղած նամակը. «Հարկավոր է Մոսկվայում հասնել օրինակելի (կամ սկզբի համար թեկուզ **տանելի)** մաքրության,— գրում է նա,— որովհետև ավելի մեծ այլանդակություն, քան, «սովետական» ցեխը սովետական «առաջին» տներում, պատկերացնել անգամ չի կարելի: Էլ ի՞նչ կլինի **ոչ** առաջին տներում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 35, էջ 568):

Սովետական առողջապահության կազմակերպման առաջին տարիներին Ն. Ա. Սեմաշկոն վիթխարի աշխատանք է ծավալում համաճարակային հիվանդությունների դեմ պայքարելու ասպարեզում, ստեղծում սոցիալիստական



առողջապահության այնպիսի ձևեր, ինչպիսիք են՝ մոր և մանկան պաշտպանությունը, երեխաների առողջության պաշտպանությունը, պայքարը սոցիալական հիվանդությունների դեմ, սանատորա-կուրորտային գործը, դիսպանսերիզացիան և այլն:

Մեծ է առաջին առժողկոմի դերը երկրի սանիտարա-հակահամաճարակային գործի բարելավման, բժշկական կադրերի, բժշկական կրթության և բժըշկագիտության զարգացման մարզում: Հատկապես ակնառու է նրա աշխատանքը գյուղական առողջապահության կազմակերպման, գյուղական վայրերի սանիտարական վիճակի բարելավման, ինչպես և բնակչությանը լայն և մասնագիտացված բուժօգնությամբ ապահովելու ասպարեզում: Սեմաշկոն հատուկ ուշադրություն է նվիրել քաղաքի և գյուղի բնակչության բուժսպասարկման ակնբախ տարբերության վերացմանը: «Բժշկության մեջ հարկավոր է վերջ տալ գյուղի երկրորդականությանը, որը ժառանգված է բուրժուա-կալվածատիրական հասարակարգից»,— գրել է Սեմաշկոն և գործնականում ամեն ինչ արել՝ աստիճանաբար վերացնելու այդ տարբերությունը:

Նիկոլայ Ալեքսանդրովիչը չափազանց կարևորում էր ֆիզիկական կուլտուրան և, պատահական չէ, որ նա դարձել է Համառուսաստանյան ֆիզկուլտուրայի խորհրդի առաջին նախագահը, հիմք դրել մասսայական ֆիզկուլտուրային շարժմանը մեր երկրում: Նրա նախաձեռնությամբ դեռ 1918 թ. հանրապետությունում ստեղծվել են ֆիզիկական կուլտուրայի երկու կենտրոնական ինստիտուտներ: Սովետական առողջապահության սիստեմում չկա մի ասպարեզ, որտեղ նա իր ավանդը չունենա: Նա է մշակել սովետական առողջապահության տեսության և կազմակերպչական հիմունքները, լուծել բնակչության բուժսպասարկման գործնական շատ հարցեր:

Գործնական-կազմակերպչական վիթխարի աշխատանքների հետ մեկտեղ Ն. Ա. Սեմաշկոն զբաղվել է նաև գիտական գործունեությամբ: Մոտ 700 գիտական և հրապարակախոսական աշխատությունների հեղինակ է նա, որոնցում, բժշկական սոցիալական պրոբլեմների մշակմանը զուգընթաց, լուսաբանել է սոցիալական հիգիենայի տեսական ու գործնական կողմերը, ցույց տվել մեր սոցիալական հիգիենայի արմատական տարբերությունը բուրժուականից: Նա հոգ էր տանում բժշկագիտության զարգացման համար, անընդհատ պահանջում, որ կիրառվեն նրա նվաճումները, ամեն ինչ անում՝ սպահովելու առողջապահության զարգացումը, կատարելագործումը: Անխոնջ ջանքեր է գործադրել մեծ գիտնականը նաև բժշկական կադրերի պատրաստման գործում: Սկսած 1921 թ., 27 տարի վարելով Մոսկվայի համալսարանի բժըշկական ֆակուլտետի (այժմ՝ Մոսկվայի առաջին բժշկական ինստիտուտի) սոցիալական հիգիենայի և առողջապահության կազմակերպման ամբիոնը, նա զբաղվել է ապագա բժիշկների դաստիարակմամբ, պատրաստել սովետական բազմաթիվ մասնագետներ:

Սեմաշկոն մեծ հայրենասեր էր և այդ սերը նա հաղորդում էր երիտասարդությանը: Հպարտությամբ է նա ասել ուսանողներին. «Դուք բախտավոր ժողովուրդ եք: Սովետական սոցիալիստական հասարակարգն ապահովել է բնակչությանը երջանիկ, կուլտուրական կյանքով, ստեղծել արդյունավետ աշխատանքի լայն հնարավորություն: Սովետական Միությունում բոլոր մասնագիտությունները լավ են: Բայց ժողովրդին ամենից ավելի մոտ է բժշկի մասնագիտությունը: Չէ՞ որ հիվանդը ձեզ վստահում է իր առողջությունը, հաճախ և՝ կյանքը: Սովետական պետությունը տրամադրում է ձեզ բոլոր հնա-

բավորությունները՝ հաջողությամբ կատարելու բժշկի ձեր վեհ պարտականությունը:

Մի՞թե դա չէ երջանկությունը: Դա չէ՞, արդյոք, մարդու իդեալը»:

1930 թ. Ն. Ա. Սեմաշկոն աշխատանքի է անցնում Համամիութենական կենտգործկոմում, որպես մանկական հանձնաժողովի նախագահ և նախագահության անդամ: 1945—49 թթ. նա եղել է ՌՍՖՍՀ մանկավարժական գիտությունների ակադեմիայի դպրոցական հիգիենայի ինստիտուտի դիրեկտոր, իսկ 1947—49 թթ.՝ ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիայի առողջապահության կազմակերպման և բժշկության պատմության ինստիտուտի (այժմ կրում է նրա անունը) դիրեկտոր: Ն. Ա. Սեմաշկոյին բնորոշ էին լենինյան հետևողականությունը ձեռնարկած գործում, հոգատարությունն ու սերը իր ընկերների, շրջապատի մարդկանց հանդեպ: Շնորհավորելով նրա 50-ամյակը՝ 1924 թ. Ն. Ն. Բուրդենկոն գրել է. «Ցանկանում եմ, չանդրադառնալով Ձեր հասարակական ծառայություններին,— այդ մասին շատ է ասվել և կասվի,— ողջունել Ձեր մի բացառիկ հատկությունը՝ դեպի մարդկանց սրտերը ուղի գտնելու կարողությունը: Ահա ես ողջունում եմ այդ հատկությունը և ցանկանում Ձեր դժվարին ճանապարհին պահպանել այն՝ իր ողջ վառ հրապույրով»:

«Շատ եմ սիրում և բարձր գնահատում Ձեզ,— գրել է նրան իր նամակներից մեկում Ա. Մ. Գորկին,— մեծ մարդ եք դուք երկրագնդի վրա, և ես չեմ չափազանցնի ասելով, որ լավ է ապրել Ձեզ հետ»:

Նրա բազմաթիվ բարեկամներից էին գիտության ու կուլտուրայի ամենատարբեր բնագավառների ներկայացուցիչներ— հասարակական-քաղաքական հայտնի գործիչներ՝ ինչպես մեր, այնպես էլ արտասահմանյան շատ երկրներից: Սեմաշկոյին գրում էին գիտնականներ, բժիշկներ, ուսանողներ, դպրոցականներ, բանվորներ, կոլտնտեսականներ, կարմիրբանակայիններ: Եվ նա ժամանակ էր գտնում պատասխանելու բոլորին: Նրա անձնական արխիվում նամակներ են պահպանվել Մ. Ի. Ուլյանովայից, Ն. Կ. Կրուպսկայայից, Ե. Դ. Ստասովայից, Կլարա Ցետկինից, Մ. Ի. Կալինինից, Ֆ. Է. Ձերժինսկուց, Ա. Վ. Լունաչարսկուց, Հ. Բարբյուսից, արտասահմանյան գիտնականներ Է. Ռուից, Է. Բյուրնեից, Մ. Գիրշից և շատ ուրիշներից:

Այժմ, հետադարձ հայացք ձգելով այն դժվարին ու բարդ ուղուն, որով ընթացել և զարգացել է սովետական առողջապահությունը, մեր ժողովուրդը սիրով ու երախտագիտությամբ է հիշում նրա հիմնադիրներից մեկի՝ ականավոր գործիչ, երկրի առաջին առժողկոմ Ն. Ա. Սեմաշկոյի անմոռաց անունը, որի ծննդյան 100-ամյակն է լրանում այս տարի: Իր 70-ամյակի կապակցությամբ, պատասխանելով շատ բարեկամների, ընկերների ու աշակերտների ողջույններին, Ն. Ա. Սեմաշկոն ասել է. «Այն ամենով, ինչ ես արել եմ կյանքում, պարտական եմ բոլշևիկյան կուսակցությանը, որն ինձ դաստիարակել, առաջնորդել է և որի կամքն եմ կատարել իմ ողջ կյանքում»:

**Ս. Պ. ՀԱՅՐԻՅԱՆ**
Բժշկական գիտությունների դոկտոր, ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիայի Ն. Ա. Սեմաշկոյի անվան դափնեկիր

---



# ՈՌՈԳՄԱՆ ՍԻՍՏԵՄԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

(1945—1955 ԹԹ.)

**Ա. Ա. ՍԱՐԳՍՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

*Դեռ չէին ավարտվել քաղաքացիական կռիվները, և չէր լռել հրանոթների խլացուցիչ ձայնը, երբ Վ. Ի. Լենինը Կովկասի կոմունիստներին ուղղած իր նամակում խորհուրդ էր տալիս ամենից առաջ ծավալել ջրաշինարարական աշխատանքները: «Ոռոգումը հատկապես կարևոր է,— գրել է նա,— հողագործությունն ու անասնապահությունը ինչ գնով էլ լինի բարձրացնելու համար:*

*...Իսկույն աշխատել բարելավել գյուղացիների դրությունը և սկսել էլեկտրիֆիկացիայի, ոռոգման խոշոր աշխատանքներ: Ոռոգումն ամենից ավելի է պետք և ամենից ավելի կվերստեղծի երկիրը, կվերածնի նրան, կթաղի անցյալը, կամրապնդի անցումը դեպի սոցիալիզմ» (Երկեր, հ. 32, էջ 404):*

*Մեծ առաջնորդի այդ ցուցումը գործողության ծրագիր դարձավ Սովետական Հայաստանի կոմունիստական կուսակցության և կառավարության համար:*

*Սովետական իշխանության հենց առաջին տարիներին միջոցներ ձեռնարկվեցին ոռոգման սիստեմների նորոգման համար, որովհետև եղածները չէին կարող բավարարել հանրապետության գյուղատնտեսության զարգացման պահանջները: Դաշնակցության տիրապետության տարիներին ավերիչ պատերազմի հետևանքով ոռոգման սիստեմը գրեթե լրիվին քայքայվել էր, և գյուղատնտեսությունը ծանր դրության մեջ էր: Հայաստանի կոմկուսակցության ղեկավարությամբ գյուղի աշխատավորները մեծ եռանդով ձեռնամուխ եղան քայքայված ջրանցքների ու ոռոգման սիստեմների վերանորոգմանը և վերակառուցմանը: Բավական է նշել, որ 1921—1925 թթ. նրանց քրտնաջան աշխատանքով հանրապետությունում վերականգնվեցին և վերակառուցվեցին 430 ջրանցք և ոռոգման սիստեմ, որոնց երկարությունը հասնում է 3.220 կիլոմետրի (տե՛ս Հոկտեմբերը և Հայաստանի տնտեսական զարգացումը, «Միտք» հրատ., Երևան, 1967, էջ 213):*

*Վերականգնման աշխատանքներն ավարտելուց հետո Հայաստանի կոմկուսակցությունը և կառավարությունը աշխատավորության ջանքերն ուղղեցին ոռոգման նոր սիստեմների կառուցմանը: Ժողովրդական տնտեսության զարգացման առաջին երեք հնգամյակների տարիներին միայն Հայաստանի ոռոգիչ ջրանցքների շինարարության մեջ ներդրվեց 237 մլն ռուբլի, որի շնորհիվ, 1919 թ. 60 հազար հեկտարի դիմաց, հանրապետության ոռոգելի հողատարածությունն ընդարձակվեց և հասավ 200 հազար հեկտարի: Այդ տարիներին կառուցվեցին և շահագործման հանձնըվեցին 91 խոշոր ու մանր ջրանցքներ:*

*Հայրենական պատերազմի ծանր տարիներին կառուցվեց և շահագործման հանձնվեց Լոռու ջրանցքը, որն սկսեց ոռոգել Ստեփանավանի և Ալավերդու շրջանների 4.000 հեկտար նախկինում անջրդի հողերը: Զգալի աշխատանք կատարվեց Թալինի, Ստորին Հրազդանի, Գառնիի, Աղիամանի, Նորքի, Հոկտեմբերյանի ջրանցքների կառուցման ասպարեզում: Նույն ժամանակաշրջանում կառուցվեցին մի շարք ջրամբարներ ու մանր ջրանցքներ: Այդ ամենի շնորհիվ հնարավոր եղավ ոռոգել 6,5 հազար հեկտար նոր հողեր:*

*Հայրենական պատերազմի հաղթական ավարտից հետո կուսակցությունը և կառավարությունը սովետական ժողովրդի ողջ ջանքերն ուղղեցին ժողովրդական տնտեսության վերականգնմանն*

ու հետագա բուռն զարգացմանը։ Նոր հեռանկարներ բացվեցին ինչպես ամբողջ Միությունում, այնպես էլ մեր հանրապետությունում իռիգացիոն նոր սիստեմներ ստեղծելու համար։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման չորրորդ հնգամյա պլանի մասին ընդունված օրենքում նախատեսվում էր 1946—1950 թթ. ապահովել Հայկական ՍՍՀ ջրովի տարածությունների աճը 23,5 հազար հեկտարի չափով, լրիվ կարողությամբ շահագործման հանձնել Ստալինի անվան, Նորքի, Ստորին Զանգվի և Գառնիի խոշոր ջրանցքները, իրագործել Արազդայանի դարավոր ամայի տափաստանի տասնյակ հազարավոր հեկտար հողերի ոռոգումը։ Դրանց զուգընթաց, պետք է կառուցվեին բազմաթիվ ոռոգիչ օբյեկտներ՝ ջրանցքներ, ջրամբարներ ու ջրհորներ։ Դա մի վիթխարի աշխատանք էր, որը ծառացել էր հանրապետության կուսկազմակերպությունների, ջրային տնտեսության բնագավառի աշխատողների, կոլտնտեսականների առջև։ Օրինակ, որպեսզի ոռոգելի դառնային Արազդայանի տափաստանի 10 հազար հեկտար ամայի հողերը և այնտեղ հիմնվեին այգեգործական տասնյակ նոր կոլտնտեսություններ ու պետական տնտեսություններ, պետք էր 40 կմ տարածությամբ ամրացվեր Արաքս գետի աջ ափը, կառուցվեին և վերակառուցվեին 50 կմ երկարությամբ ջրանցքներ, տափաստանում փորվեին 60 մետր խորությամբ բազմաթիվ ջրհորներ, որոնցից ջրհանների միջոցով պետք է դուրս բերվեր ճահճային ջուրը և հեռացվեր տափաստանի սահմանից։

Ստորին Զանգվի ջրանցքը, որը ոռոգելու էր Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Զանգիբասարի և Շահումյանի շրջանների ամայի հողերը, ունենալու էր 28,3 կմ երկարություն։ Այդ ջրանցքը շահագործման հանձնելու համար հարկավոր էր կատարել 860 հազար խմ բետոնապատում ու քարապատում։ Ինչպես տեսնում ենք, ոռոգման գործը մեր հանրապետությունում առաջ էր ընթանում խիստ դժվարին պայմաններում։ Դա, անկասկած, յուրացվող հողերի մեկ հեկտարի հաշվով պահանջում էր խոշոր չափերի կապիտալ ներդրումներ։ Տնտեսագետների հաշվումներով մեկ հեկտար հողի ոռոգման և նոր յուրացվող հողերի գյուղատնտեսական յուրացման վրա միջին հաշվով ծախսվում է 2.500—3.000 ռուբլի (տե՛ս, Հ. Մ. Մանասերյան. Գյուղատնտեսության ինտենսիվացման տնտեսական նշանակությունը, Երևան, 1967, էջ 15)։ Իսկ քանի որ մեր հանրապետությունում ոռոգելի հողերի խոշոր մասը օգտագործվում է այգեգործության, պտղաբուծության և բանջարա-բոստանային ու բարձրարժեք տեխնիկական կուլտուրաների աճեցման նպատակներով, ապա ոռոգվող և նոր յուրացվող հողերի վրա կատարված ծախսերը հատուցվում են չափազանց կարճ ժամանակամիջոցում։

Ոռոգման այսպիսի մեծ ծրագրի իրականացման համար պահանջվում էին համապատասխան քանակությամբ տեխնիկա և մարդկային ուժեր։ ՀԿԿ Կենտկոմը, շրջանային կոմիտեները, ջրաշինարարական համապատասխան օրգանները տնտեսական-կազմակերպական, քաղաքական-մասսայական ակտիվ գործունեություն ծավալեցին այդ շրջանների կոլտնտեսային գյուղացիության մեջ, մոբիլիզացրին նրանց ջանքերը՝ հետպատերազմյան առաջին հնգամյակում նախատեսված ոռոգման խնդիրների հաջող լուծման համար։ ՀԿ(բ)Կ Կենտկոմը և նրա բյուրոն իրենց նիստերում պարբերաբար քննարկում էին ոռոգման աշխատանքներին վերաբերող հարցեր և միջոցառումներ մշակում այդ խնդիրների հաջող լուծման համար։ Ընդհանուր պլանին համապատասխան կուսակցության Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների սովետը համատեղ քննարկում էին յուրաքանչյուր տարվա ոռոգման պլանները և ճշգրտումներ մտցնում։

Հետպատերազմյան առաջին տարվա սկզբին՝ 1946 թ. փետրվարի 26-ին, տեղի ունեցավ ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոյի և ՀՍՍՀ ժողկոմսովետի համատեղ նիստը, որտեղ քննարկվեցին իռիգացիոն շինարարության խնդիրները։ Համատեղ ընդունված որոշման մեջ նշվեց, որ 1946 թ. իռիգացիոն կապիտալ շինարարական աշխատանքներ պետք է կատարվեն Թալինի, Ստորին Զանգվի ջրանցքների կառուցման, Արազդայանի հարթավայրի չորացման և ոռոգման նպատակով։ Կարևոր շինարարական օբյեկտներ էին նաև Կոտայքի ջրհան կայանը, Արփաչայի ջրամբարը, Նորքի ջրանցքը և այլն։ Մարտունու, Արթիկի, Աշտարակի, Ստեփանավանի, Ալավերդու, Շամշադինի և Արտաշատի շրջանների կուսշրջկոմներին և շրջսովետների գործկոմներին հանձնարարվեց՝ կոլտնտեսությունների ուժերով ու միջոցներով ոռոգման ցանց ստեղծել Լոռու, Գառնու և Աղիամանի հողատարածություններում, ավարտել Երևանի, Չինարի ջրանցքների շինարարությունը, Ամբերդի ջրանցքի, ինչպես նաև Արթիկի շրջանի ոռոգման ցանցի վերակառուցման աշխատանքները։

ՀԿ(բ)Կ Կենտկոմի 1948 թ. հունվարին կայացած պլենումը քննարկեց «1948 թվականի իռիգացիոն աշխատանքի մասին» հարցը։ Նշվեց, որ պատերազմի տարիներին և հետպատերազմյան առաջին տարվա ընթացքում հանրապետությունում ոռոգելի հողերի տարածությունն ավելացել է 23 հազար հեկտարով։ Սակայն պլենումը էական թերություններ բացահայտեց հանրապետության իռիգացիոն շինարարության բնագավառում։ Այսպես, 1946—1947 թթ. իռիգացիոն ջրանցքների շինարարության տեմպերը զգալիորեն ցածր



էին 1938—1939 թթ. տեմպերից։ Շրջանային կուսակցական ու սովետական կազմակերպությունները չէին ապահովել կոլտնտեսականների զանգվածային մասնակցությունը ջրանցքների շինարարությանը։ Լուրջ թերություններ կային ջրային տնտեսության մինիստրության և նրա տեղական օրգանների գործունեության մեջ։ Հանրապետության շրջանային կուսակցական ու սովետական կազմակերպությունները և կոլտնտեսությունների ղեկավարներն անհրաժեշտ նախաձեռնություն հանդես չէին բերում շրջանների և կոլտնտեսությունների ուժերով ու միջոցներով մանր իռիգացիոն ջրանցքներ ու ջրամբարներ կառուցելու գործում։ «Հայկական ՍՍՀ-ում հողերի ոռոգման աշխատանքներն արագացնելու մասին» ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1947 թ. դեկտեմբերի 10-ի որոշման կատարումն ապահովելու նպատակով ՀԿ(բ)Կ Կենտկոմի պլենումը հանձնարարեց ՀՍՍՀ Մինիստրների սովետին և ջրային տնտեսության մինիստրությանը՝ մշակել և իրագործել միջոցառումներ, որոնք պետք է ապահովեին 1948 թ. Թալինի ջրանցքի առաջին հերթի շինարարությունը՝ 12 հազար հեկտար հողատարածություն ոռոգելու համար։ Նախատեսվում էր Արտաշատի շրջանում 1948 թ. ցամաքեցնել 1.700 հեկտար տարածություն։ Միաժամանակ պահանջվում էր արագացնել Արազդայանի տափաստանի ցամաքեցման աշխատանքների ավարտումը։ Ցամաքեցման աշխատանքները պետք է կատարվեին միաժամանակ Արտաշատի շրջանում 18,5 քառ. կմ տարածության վրա, Զանգիբասարում՝ 15 քառ. կմ, Էջմիածնում՝ 8 քառ. կմ տարածության վրա։ Պլենումը միջոցներ նշեց Շամիրամի ու Եղվարդի հողերի ոռոգման, ինչպես նաև Արտաշատի, Զանգիբասարի ու Էջմիածնի շրջաններում կոլեկտորային-ցամաքեցման ու վերակառուցման համար։ Պլենումը պարտավորեցրեց ջրային տնտեսության մինիստրությանը և կուսակցության մի շարք շրջկոմների ու շրջսովետների գործկոմներին՝ ապահովել Ստորին Զանգվի ջրանցքի շինարարության ավարտումը մինչև 1948 թ. հուլիսի 1-ը և կոլտնտեսականների մասնակցությունը ջրանցքների շինարարության, ցամաքեցման և կոլեկտորային ցամաքեցուցիչ ցանցի մաքրման ու նորոգման գործին։

Պլենումը պահանջեց ջրային տնտեսության մինիստրությունից՝ իռիգացիոն շինարարության մեջ լայնորեն արմատավորել աշխատատար պրոցեսների մեքենայացումը, ինչպես նաև վճռական միջոցներ ձեռք առնել եղած շինարարական մեխանիզմները լրիվ օգտագործելու համար։ Միաժամանակ պարտավորեցրեց գյուղատնտեսության և ջրային տնտեսության մինիստրություններին՝ կազմակերպել էքսկավատորավարների, հիդրոտեխնիկների, տասնապետների և ջրաշինարարության ու ջրային տնտեսության այլ կադրերի պատրաստումը։

ՀԿ(բ)Կ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների սովետի վերոհիշյալ միջոցառումները զգալի չափով նպաստեցին մեր հանրապետության իռիգացիոն շինարարության աշխատանքների բարելավմանը։ Սակայն իռիգացիոն սիստեմը դեռևս չէր բավարարում հանրապետության գյուղատնտեսության արագ զարգացման պահանջները, լրիվին չէին վերացվել այդ բնագավառում եղած թերությունները։ Ահա թե ինչու ՀԿ(բ)Կ XIV համագումարը լուրջ թերություններ բացահայտեց ջրաշինարարության ասպարեզում։ Համագումարը նշեց, որ հանրապետությունում կատարվող ջրանցքների շինարարությունն անթույլատրելի կերպով ձգձգվում է։ Մասնավորապես քննադատվեց ՀՍՍՀ ջրային տնտեսության մինիստրությունը, որի ոչ օպերատիվ գործունեության հետևանքով դեռևս ցածր էր աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը, լուրջ թերություններ կային նախագծային աշխատանքներում։ Հաճախ ջրանցքները շահագործման էին հանձնվում անավարտ վիճակում[1]։ Նման թերություններ արդեն բացահայտվել էին ՀԿ(բ)Կ Կենտկոմի 1948 թ. հունվարյան պլենումում։ Համագումարը պարտավորեցրեց կուսակցական շրջկոմներին, շրջանային սովետների գործկոմներին և ՀՍՍՀ ջրային տնտեսության մինիստրությանը՝ կարճ ժամանակում վերացնել նշված թերությունները և ամբողջ ջանքերը մոբիլիզացնել իռիգացիոն աշխատանքները ժամանակին և որակով կատարելու համար[2]։

Հանրապետության կոլտնտեսային գյուղացիությունը, ՀՍՍՀ ջրային տնտեսության մինիստրությունը, շրջանային կուսկազմակերպությունները ու սովետական օրգանները, հաշվի առնելով ՀԿ(բ)Կ XIV համագումարի և Կենտկոմի պլենումների, ինչպես նաև ՀՍՍՀ Մինիստրների սովետի որոշումներն ու դիրեկտիվներն իռիգացիոն շինարարության վերաբերյալ, հսկայական աշխատանք ծավալեցին պլանով նախատեսված ջրաշինարարական օբյեկտների կառուցման և ժամանակին շահագործման հանձնելու բնագավառում։ Բավական է նշել, որ 1949 թ. ավարտվեց և շահագործման հանձնվեց Ստորին Հրազդանի ջրանցքի առաջին հերթը, որը հնարավորություն ընձեռեց Էջմիածնի և Շահումյանի անվան շրջաններում ոռոգելի դարձնել 5 հազար հեկտար նոր հողեր, ինչպես նաև բարելավել 4 հազար հեկտար հողերի ջրապահովվածությունը Էջմիածնի շրջանում։ Իռիգացիոն այդ օբյեկտի

[1] Տե՛ս Հաշվետու զեկուցում ՀԿ(բ)Կ XIV համագումարին, Երևան, 1948, էջ 57։

[2] Տե՛ս ՀԿ(բ)Կ XIV համագումարի բանաձևեր. Երևան, 1948, էջ 20—21։

շահագործմամբ հնարավոր դարձավ Քասախ գետի ջրերի զգալի մասն օգտագործել Աշտարակի և Ապարանի շրջաններում։ 1949 թ. ավարտվեց և շահագործման հանձնվեց Արփա լճի ջրամբարը՝ 100 մլն խմ ջրատարողությամբ։ Այդ ջրամբարի կառուցումը զգալի չափով կարգավորեց և կայունացրեց Շիրակի հարթավայրի ոռոգման սիստեմը և նպաստեց հացահատիկի ու շաքարի ճակնդեղի ցանքատարածությունների ընդարձակմանը և բերքատվության բարձրացմանը։ Այդ նույն ժամանակաշրջանում շահագործման հանձնըվեց նաև Կոտայքի բարձր ճնշման կայանը, որը ոռոգում էր շուրջ 1.000 հեկտար հողատարածություն։ Հետպատերազմյան չորրորդ հնգամյակի վերջին երկու տարիներին հանրապետությունում ոռոգվող հողատարածությունն ավելացավ 8,8 հազար հեկտարով, ջրամատակարարման ու հողի մելիորացիոն աշխատանքների շընորհիվ բարելավվեց 15 հազար հեկտար հողատարածություն[1]։

Ինչպես եղբայրական մյուս հանրապետություններում, այնպես էլ ՀՍՍՀ-ում հողատարածությունների ոռոգման ասպարեզում կար լուրջ թերություն. հողատարածությունները ոռոգելու համար ստեղծվում էր մշտական առուների խիտ ցանց, որի պահպանման համար պահանջվում էր տեխնիկական և մարդկային մեծ ուժ։ Դրա հետևանքով չէր օգտագործվում լավագույն հողատարածությունների շուրջ 12 տոկոսը։

«Վայրի ջրթողման» այդ մեթոդը նպաստում էր մոլախոտերի բազմացմանն ու հողերի ճահճակալմանը, արգելակում տրակտորահարմար մեծ զանգվածներով հողատարածությունների ստեղծումը, պատճառ դառնում ջրի մեծ չափերի կորստի։ Նման պայմանները չէին նպաստում գյուղատնտեսության արագ զարգացմանը, ինտենսիվ գյուղատնտեսության ստեղծմանը։ Հաշվի առնելով ոռոգման սիստեմում եղած վերոհիշյալ թերությունները՝ ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1950 թ. օգոստոսի 17-ին ընդունեց «Ոռոգվող հողերն ավելի լրիվ օգտագործելու և գյուղատնտեսության աշխատանքների մեքենայացման բարելավման համար ոռոգման նոր սիստեմին անցնելու մասին» որոշումը[2]։ Ոռոգման նոր սիստեմի էությունն այն էր, որ նախկին մշտական առուների փոխարեն ստեղծվեցին ժամանակավոր առուներ. բերքահավաքից հետո, վարի ընթացքում դրանք վերացվում էին, և հողամասը դառնում էր տրակտորահարմար։ Մեր հանրապետությունում ոռոգման նոր սիստեմի նախագիծը պատրաստելու նպատակով ստեղծվեցին 40 նախագծային խմբեր, որոնցում ընդգրկվեցին 200 մասնագետներ[3]։ Այդ մասնագիտական խմբերը շրջաններում սկսեցին ուսումնասիրել հողակլիմայական պայմանները, կազմել նախագծեր։ ՀԿ(բ)Կ XV համագումարը հանձնարարեց շրջանային կուսկազմակերպություններին՝ ուժեղացնել ղեկավարությունն ու օգնությունը ջրային տնտեսության օրգանների նկատմամբ, ջրաշինարարական աշխատանքներին մասնակցելու համար կոլտնտեսությունների կողմից նրանց տրամադրել բանվորական ուժ։ Ոռոգման նոր սիստեմին անցնելու աշխատանքները համագումարը նախատեսում էր ավարտել 1950—1952 թթ.։ Այդ ժամանակամիջոցում մեր հանրապետությունում պետք է ոռոգման նոր սիստեմին անցներ շուրջ 150 հազար հեկտար հողատարածություն, ընդ որում, ընդհանուր հողատարածությունից 20 հազարը պետք է յուրացվեր 1950 թ., 58 հազարը՝ 1951 թ., իսկ 72 հազարը՝ 1952 թվականին[4]։ Հաշվի առնելով ՀԿ(բ)Կ XV համագումարի այդ ցուցումները, հանրապետության կուսկազմակերպությունները, ՄՏԿ-ները և ջրաշինարարական օրգանները անմիջապես ձեռնամուխ եղան ոռոգման նոր սիստեմին անցնելու դժվարին, բայց խիստ անհրաժեշտ գործին։ Կուսկազմակերպությունների ղեկավարությամբ հանրապետության կոլտնտեսականները և ՄՏԿ-ների աշխատողները զգալի աշխատանքներ կատարեցին 1950 թ.։ Նրանք վերացրին 350 կմ ջրանցքներ, 650 կմ միջնակներ, կատարեցին 1,4 մլն խմ հողային աշխատանք և հավաքեցին 35 հազար խմ քար։ Այդ ամենը հնարավորություն ընձեռեց, պլանով նախատեսված 20 հազարի դիմաց նոր սիստեմով ոռոգելու 18.645 հեկտար հողատարածություն[5]։ Գործը շարունակվեց 1951 և 1952 թվականներին։ Այդ ժամանակամիջոցում 97 հազար հեկտար հողատարածություն արդեն մշակվում էր ոռոգման նոր սիստեմով։ Իսկ դա իրականացնելու համար կատարվել էր 9 մլն 300 հազար խմ հողային աշխատանք, ոռոգվող հողատարածություններից հավաքվել և դուրս էր հանվել 574 մլն խմ քար և այլն[6]։ Ոռոգման նոր սիստեմին անցնելու նպատակով հանրապետության բազմաթիվ կոլտնտեսություններում ստեղծվեցին հողային խոշոր տարածություններ, որոնք հարմար էին ինչպես ոռոգման, այնպես էլ մեքենայաց-

[1] Տե՛ս ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 84, գ. 23, թ. 138։

[2] Տե՛ս Директивы КПСС и Советского правительства по хозяйственным вопросам, М., 1957, т. 3, стр. 540.

[3] Տե՛ս ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 84, գ. 23, թ. 140։

[4] Տե՛ս Հաշվետու զեկուցում ՀԿ(բ)Կ XV համագումարին, Երևան, 1951, էջ 44։

[5] Տե՛ս ՀՍՍՀ ՊԿԱ., ֆ. 163, ց. 22, գ. 177, թ. 6։

[6] Տե՛ս ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 84, գ. 64, թ. 189։



ման համար։ Բազմաթիվ փաստերից նշենք մի քանիսը։ Այսպես, եթե նախկինում Արտաշատի շրջանում ոռոգման ենթակա 828 հողակտոր կար, որոնց միջին տարածությունը չէր գերազանցում 5,6 հեկտարից, ապա ոռոգման նոր սիստեմին անցնելուց հետո դրանց թիվը իջավ 127-ի, որոնցից յուրաքանչյուրի տարածությունը 37 հեկտար էր։ Վեդու և Հոկտեմբերյանի շրջաններում 6 անգամ պակասեց ոռոգելի հողակտորների քանակը և 3,4 անգամ ավելացավ միջին ծավալը։ Նման կարգի փոփոխություններ եղան նաև հանրապետության մյուս շրջաններում։

Ոռոգման նոր սիստեմին անցնելը նպաստեց այդ հողատարածություններում գյուղատնտեսական մեքենաների ազատ ու ամբողջ հզորությամբ օգտագործմանը, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացմանը։ Այսպես, Արտաշատի շրջանի Փարիզյան կոմունայի անվան կոլտնտեսությունը, ոռոգման նոր սիստեմին անցնելու շնորհիվ, 45 ջրվի հողակտորները դարձրեց 15, որոնցից յուրաքանչյուրի տարածությունը կազմում էր 40 հեկտար։

Վերոհիշյալ փաստերն ակնառու ցույց են տալիս, որ ոռոգման նոր սիստեմը լայն հնարավորություններ էր ընձեռում գյուղատնտեսության հետագա զարգացման, տրակտորահարմար հողատարածությունների ստեղծման, գյուղատնտեսական տեխնիկայի արդյունավետ օգտագործման, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման համար։

Հետպատերազմյան երկրորդ հնգամյակի տարիներին խոշոր աշխատանք կատարվեց հանրապետության խիդացիոն սիստեմի ընդլայնման, ճահճուտ հողերի ցամաքեցման ասպարեզում։ 1951 թ. գործարկվեց Արզնի—Շամիրամ ջրանցքի առաջին հերթը, որը պետք է ոռոգեր 13 հազար հեկտար հողատարածություն։ Շարունակվեց Ստորին Զանգվի ջրանցքի երկրորդ հերթի շինարարությունը, իսկ 1954 թ. սկսվեց Կոտայքի ոռոգման սիստեմի կառուցումը։ Միայն մայր ջրանցքի երկարությունը 40 կմ էր։ Հանրապետության տարբեր շրջաններում կառուցվեցին բազմաթիվ մանր ու միջին մեծության ջրանցքներ, ջրհորներ ու ջրամբարներ։ Արարատյան հարթավայրում, Բասարգեչարի, Նոր Բայազետի, Ախտայի շրջաններում անց էին կացվում ցամաքեցման և ոռոգման մի շարք միջոցառումներ։ ՀԿԿ XVII համագումարը, անդրադառնալով ջրաշինարարական աշխատանքներին, հանրապետության կուսկազմակերպությունների, ՄՏԿ-ների, ջրային տնտեսության մինիստրության օրգանների առջև խնդիր դրեց հինգերորդ հնգամյակի վերջին երկու տարիներին ապահովել Ստորին Զանգվի ջրանցքի երկրորդ հերթի, Նորքի, Դվինի, Ալափարսի ջրանցքների, Արմաշի, Հոկտեմբերյանի, Ալավերդու ջրհան կայանների շինարարության ավարտումը, լայնորեն մեքենայացնել բետոնային աշխատանքները և ջրատնտեսական շինարարության մյուս պրոցեսները, առավելագույնս օգտագործել տեխնիկան։

Հանրապետության կուսկազմակերպությունները, ՄՏԿ-ները և ջրային տնտեսության մինիստրությունը հսկայական աշխատանք ծավալեցին ՀԿԿ XVII համագումարի առաջադրած խնդիրները ժամանակին լուծելու համար։ Միայն 1952—1955 թթ. ջրաշինարարության բնագավառում ներդրվեց 107,3 մլն ռուբլի։ 1954—1955 թթ. շահագործման հանձնվեցին ջրաշինարարական 11 օբյեկտներ։ Նոր ոռոգվող հողերն աճեցին 5.500 հեկտարով։ Հինգերորդ հնգամյակի տարիներին հանրապետության կոլտնտեսություններում ոռոգիչ ցանց ունեցող հողատարածությունները, նոր շինարարության շնորհիվ, ընդարձակվեցին 6.200 հեկտարով, իսկ որպես վարելահող օգտագործելու նպատակով չորացված հողատարածությունները կազմեցին 4.164 հեկտար։

Մեծ աշխատանք կատարվեց հանրապետությունում ջրամբարների կառուցման և ստորերկրյա ջրերը ոռոգման նպատակով օգտագործելու ասպարեզում։ Հատկանշական է, որ, եթե 1913 թ. Հայաստանում կար ընդամենը 11 ջրամբար, ապա 1956 թ., դրանց թիվը հասավ 220-ի։ Ջրատնտեսական շինարարության հսկայական աշխատանքի շնորհիվ հանրապետության ոռոգելի հողատարածությունը 1955 թ. հասավ 213.494 հեկտարի, 1919 թ. 60 հազարի փոխարեն։ Վերոհիշյալ փաստերը վկայում են, որ Հայաստանի կուսկազմակերպությունը, կոլտնտեսականները, ՄՏԿ-ների, ջրային տնտեսության բնագավառի աշխատողներն ամեն կերպ հոգ էին տանում ոռոգելի հողատարածություններն ընդարձակելու, ջրատնտեսական կայուն համակարգ ստեղծելու մասին։ Հետպատերազմյան տարիներին հանրապետությունում ի հայտ եկան նոր ջրանցքներ, ջրամբարներ, ջրհորներ։ Այդ ժամանակաշրջանում զգալի աշխատանք ծավալվեց ճահճուտ հողերի ցամաքեցման ու աղակալած հողերի աղազերծման և գյուղատնտեսական կուլտուրաների մշակման նպատակով դրանք պիտանի դարձնելու համար։ Այդ ամենը նպաստեց հանրապետությունում ոռոգվող հողատարածություններում գյուղատնտեսական աշխատանքի վարման կուլտուրայի բարձրացմանը, տեխնիկայի առավելագույն չափով օգտագործմանը և գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության աճին։

## ԳՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ

# ՓԱՍՏԵՐԸ ՀԵՐՔՈՒՄ ԵՆ

Վ. Ա. ԱՎԵՏԻՍՅԱՆ

Վերջին տարիներին Հայաստանում լույս են տեսել մի քանի աշխատություններ*, որոնց հեղինակներն անդրադարձել են անցյալ դարի յոթանասունական-ութսունական թվականներին հայ հրապարակախոսության մեջ հանդես եկած Գրիգոր Տեր-Մելքիսեդեկյանի գործունեությանն ու սոցիալ-քաղաքական հայացքներին: Ցավոք, հրապարակի վրա եղած աշխատությունների հեղինակները լիովին ու ճշմարտացի չեն բացահայտել հիշատակված անձնավորության հասարակական գործունեության գլխավոր նկրտումը: Դեռ ավելին, մեր հարգարժան հետազոտողները՝ Ս. Ճ. Զուրաբյանը և Կ. Ա. Դանիելյանը, չունենալով փաստական հիմքեր, Գ. Տեր-Մելքիսեդեկյանին գրեթե կարգել են Մ. Նալբանդյանի հեղափոխական-դեմոկրատական հոսանքի հետևորդ:

Գրիգոր Տեր-Մելքիսեդեկյանը ծնվել է Շուլավերում 1848 թ., վախճանվել է Թիֆլիսում՝ 1882-ին: Նրա գրչին են պատկանում «Հոգևորականությունը իր մտավոր դրությունով» (1874 թ.), «Մեր Կովկասի հիմիկվան լրագրերը» (1878 թ.), «Նվեր քյասիբ գեղըցիներին» (1879 թ.) և այլ գրքույկներ, ինչպես նաև հոդվածներ՝ Կովկասի պարբերական մամուլում: 1879—1882 թթ. նա Թիֆլիսում հայերեն և ռուսերեն լեզուներով հրատարակել է «Աշխատանք» («Труд») անունով «քաղաքագիտական և գրական շաբաթաթերթ»:

Իր գրքույկներում և հոդվածներում Գ. Տեր-Մելքիսեդեկյանը պաշտպանել է ու զարգացրել պրոգրեսիվ, լուսավորչական մի շարք գաղափարներ, քննադատել է հին, հետադիմական հասարակական հարաբերությունները, եկեղեցին ու հոգևորականությանը, սխոլաստիկ ուսուցումը դպրոցում, կյանքի պահանջներն անտեսող, կյանքից կտրված մամուլի օրգանները, նշել է գյուղում և քաղաքում իշխող հարստահարությունները, սոցիալական անհավասարությունը, աշխատավորական զանգվածների աճող աղքատությունն ու ընչազրկությունը: Մատնանշելով իր ժամանակի տնտեսական ու հասարակական կյանքի ցավոտ կողմերն ու կնճռոտ հարցերը, նա աշխատել է միաժամանակ դրանք վերացնելու և կյանքում «արդարության ու ազատության» սկզբունքները հիմնելու միջոցներ առաջադրել:

Մեր պատմագրության մեջ Գ. Տեր-Մելքիսեդեկյանի աշխատություններին անդրադարձել են հազվադեպ: Գ. Ղարաջյանը (Ս. Տ. Արկոմեդ) իր «Անցյալի հիշողություններից» գրքույկում (Թիֆլիս, 1918 թ.), հենվելով անձնական տպավորությունների վրա, նշում է, որ Գ. Տեր-Մելքիսեդեկյանը «անարխիստական-սոցիալիստական հակումներով մի «խենթ» էր, որ նա, «ինչպես նրա խոսքերից երևում էր, Պրուդոնի աշակերտն էր և սիրահարը» (Գևորգ Ղարաջյան (Ս. Տ. Արկոմեդ), «Անցյալի հիշողություններից», Թիֆլիս, 1918 թ., էջ 26):

Բայց Գ. Ղարաջյանը, ինչպես ինքն է նշում, Գ. Տեր-Մելքիսեդեկյանի գրվածքների, նրա «Աշխատանք» թերթի «բովանդակությունը մոռացել է, իսկ թերթը գտնելը այժմ դժվար է»: «Ես պատանի էի այն ժամանակ,— գրում է Ղարաջյանը,— և չեմ հիշում, թե 40 տարի առաջ ինչ էր նա գրում»:

Գ. Տեր-Մելքիսեդեկյանի մասին առավել հանգամանորեն գրել են Ս. Ճ. Զուրաբյանը և Կ. Ա. Դանիելյանը:

Վերլուծելով Գ. Տեր-Մելքիսեդեկյանի երկերը, Ս. Զուրաբյանն ընդգծում է դրանց պրոգրեսիվ նշանակությունը, միաժամանակ նշում, որ այդ երկերում բացակայում է «սոցիալական և դասակարգային հարաբերությունների լուրջ և խոր վերլուծում» (էջ 405), որ նկարագրելով աշխատավոր գյուղացիության դժբախտ վիճակը, նա գյուղացիների դրության բարելավման ոչ մի ռադիկալ միջոց չի առաջադրում (էջ 403), որ հիմք չկա պնդելու, թե Տեր-Մելքիսեդեկյանն իր հայացքներով հասավ մինչև կրոնի բացասմանը. նա գտնում էր, որ կրոնը և բնագիտությունը համատեղելի են և այլն:

Ծանոթանալով Գ. Տեր-Մելքիսեդեկյանի գրքույկներին, չի կարելի չհամաձայնել Ս. Զուրաբյանի վերոհիշյալ դիտողությունների հետ: Դրանք ճիշտ են: Տեր-Մելքիսեդեկյանի շատ դրույթներ իրենցից ներկայացնում են ֆրանսիական աղբյուրներից քաղած իդեալիստական սիստեմների մի էկլեկտիկ խառնուրդ: Այսպես, դատապարտելով վերացականությունը և նախապատվություն տալով գործնական իրողություններին, Տեր-Մելքիսեդեկյանը հայտարարում է, թե դրանք ավելի զորեղ են և հաղթում են միշտ, որովհետև «նորանց զորությունը հիմնված է բնականության, անհաղթելի օրենքների վրա, որոնց սահմանել է հավիտենական աստվածը մարդին երջանիկ կացուցանելու համար...»: Ըստ Տեր-Մելքիսեդեկյանի, քրիստոնեությունը մոտենալով գործնական կյանքին, ավելի հաստատուն է դառնում: «Ժողովրդի բոլոր խեղճությունները գրեթե հոգևորական տգիտությունից են առաջանում», հայտարարում է նա և առաջարկում, որ ժողովուրդն ուշադրություն դարձնի հոգևորականների «անբավականացուցիչ դրության վրա»: Նա գտնում էր, որ նախապաշարված, տգետ, խղճմտանքից զուրկ հայ հոգևորականությանը պետք է փոխարինել կրթված հոգևորականությամբ: Այդպիսով, Տեր-Մելքիսեդեկյանը ոչ թե հանդես է գալիս կրոնի և կղերականության դեմ առհասարակ, այլ ձգտում է դրանց պահպանմանը՝ բարեփոխումներով:

Տեր-Մելքիսեդեկյանի մասին գրելիս հետազոտողները հնարավորություն չեն ունեցել ծանոթանալու նրա «Աշխատանք» թերթին, որի էջերում առավել պարզությամբ և ամբողջությամբ է դրսևորվում հրապարակախոսի աշխարհայացքը:

Ս. Զուրաբյանը անկեղծորեն խոստովանում է, որ աղբյուրների բացակայության պատճառով դեռևս չեն պարզված մի շարք կարևոր հարցեր, որոնց Տեր-Մելքիսեդեկյանը հավանականորեն պատասխան է տվել «Աշխատանք» թերթի համարներում: «Դեռևս չի պարզված նրա վերաբերմունքը գյուղացիական ռեֆորմի, ագրարային հարաբերությունների, բանվոր դասակարգի և բանվորական շարժման, ինչպես նաև մի շարք այլ հարցերի նկատմամբ» (Ս. Ճ. Զուրաբյան, Հայ տնտեսագիտական մտքի զարգացման ուրվագծեր, էջ 404):

Տարիներ առաջ մեզ հաջողվեց ծանոթանալ Գ. Տեր-Մելքիսեդեկյանի «Աշխատանք» շաբաթաթերթին, որի կոմպլեկտը, բացառությամբ 1880 թ. № 6-ի, պահպանվում է Լենինգրադի Սալտիկով-Շչեդրինի անվան գրադարանում: Շաբաթաթերթի ընթերցումը մեզ հանգեցրեց այն համոզման, որ Գ. Մելքիսեդեկյանի աշխարհայացքը ոչ մի կապ չունի Մ. Նալբանդյանի հեղափոխական դեմոկրատիզմի հետ և որ նա չի անցնում «աշխատավորական դասակարգային դիրքերի պաշտպանությանը», ինչպես այդ ակնարկում են Ս. Զուրաբյանը և ուրիշ հեղինակներ:

Գ. Տեր-Մելքիսեդեկյանի հայ-ռուսերեն լեզվով «Աշխատանք» շաբաթաթերթը լույս է տեսել անկանոն, մեծ ընդմիջումներով: Հրատարակման ամբողջ ծախսը կատարել է ինքը՝ խմբագիրը, մեն-մենակ, մատնելով իրեն քաղցի ու սովի:

1879 թ. լույս է տեսել մեկ համար, 1880 թ.՝ 7 համար, 1881 թ.՝ 2 համար և 1882 թ.՝ մեկ համար:

Շաբաթաթերթը լույս էր տեսնում միաժամանակ ռուսերեն և հայերեն: Սովորաբար հայերեն և ռուսերեն նյութերը նույնն են: Կան բացառություններ: Շաբաթաթերթի միակ աշխատակիցը և բոլոր հոդվածների հեղինակը Գ. Տեր-Մելքիսեդեկյանն է: Այդ հոդվածներում նա փորձում է շոշափել քաղաքատնտեսական մի շարք հարցեր (աշխատանքի և կապիտալի, առևտրի, կապիտալիստական վարկի և այլն), կրկնելով դրանց վերաբերյալ տարբեր տեսաբանների հայացքները: Նրա հոդվածներում կգտնենք և՛ պրուդոնիզմ, և՛ բուրժուական գռեհիկ քաղաքատնտեսության դպրոցի ներկայացուցիչների (Ուիլյամ Տորնտոնի և այլոց) թեորիաները, և՛ Գ. Արծրունու հայացքները, բայց ոչ երբեք՝ Մ. Նալբանդյանի:

Նախ՝ Գ. Տեր-Մելքիսեդեկյանը բացարձակորեն դեմ է սոցիալիզմի ուսմունքին և հակակրում է սոցիալիստներին՝ պաշտպանելով ցարական կառավարության պաշտոնական տեսակետը այդ հարցում: 1879 թ. «Աշխատանք»-ի № 1-ի առաջնորդողում Եվրոպայի հասցեին առաջադրած նրա մեղադրանքներից մեկն էլ այն է, որ նա՝ Եվրոպան, «մեզանում տարածում է հակակառավարական սոցիալիստական հայացքներ»:

Գ. Տեր-Մելքիսեդեկյանի հրատարակած

* Ս. Ճ. Զուրաբյան: Հայ տնտեսագիտական մտքի զարգացման ուրվագծեր: Երևան, 1959: Կ. Ա. Դանիելյան: Հայ գյուղագրությունը XIX դարում: Երևան, 1973: Վ. Ա. Պարսամյան: Հայ ազատագրական շարժումների պատմությունից: Երևան, 1958:

«Աշխատանք» լրագրի 1881 թ. ապրիլի 6-ի համարում ասված է. «Յուրաքանչյուր քաղաքացու զգացմունքի համար ամենասոսկալին, ամենանողկալին և խորապես գարշելին այն է, որ մահափորձ են կատարել աստվածաշնորհ Ալեքսանդր II-ի սրբազան կյանքի նկատմամբ, և իրենց խավար ու դժոխային մտահղացման մեջ այնքան հեռու են գնացել, որ մարտի մեկին, օրը ցերեկով հանցագործ ձեռքով նրա ոտքի տակ նետված պայթուցիկ ռումբով սպանեցին մեր ազատարարին... Եվ ինչո՞ւ, ասացե՛ք, ինչո՞ւ համար էր այդ դժոխային չարագործությունը»:

«Աշխատանքի» խմբագիրը նարոդովոլեցներին անվանում է չարանենգներ, որոնք սպանեցին «ազատարար» կայսրին, իսկ նրանց ուսմունքը՝ «սոցիալիստ-հեղափոխական վտանգավոր խոց Ռուսաստանի մարմնի վրա»: «Նալբանդյանական» գործիչը առաջարկում է «Ռուսաստանի վրա եղած սոցիալիստական խոցը» վերացնել բուրժուական ռեֆորմների միջոցով:

Այս համոզման արտահայտիչը կարո՞ղ էր արդյոք Մ. Նալբանդյանի հեղափոխականության հետ որևէ առնչություն ունենալ: Իհարկե՝ ո՛չ: Չէ՛ որ այդ լրագրի խմբագիրն իրեն հատուկ անկեղծությամբ գրել է, թե մեր հայացքները արտահայտելու իրավունքը տերության կողմից է մեզ շնորհված և «մենք էլ որպես հավատարիմ հպատակ հարգում ենք մեր ողորմած տերությանը, հարգում ենք թերևս ավելի շատ, քան շատերը»:

Ինչպես տեսնում ենք, Գ. Տեր-Մելքիսեդեկյանը խոստովանել է իր հավատո հանգանակը, որը ոչ մի հիմք չի տալիս որևէ մեկին, նրան կապելու Մ. Նալբանդյանի հետ: Նա պարզապես գրել է, որ իր հրատարակած լրագրի «միակ անկեղծ ցանկությունն է, որ ժամանակի պահանջող ոգու համաձայն ծանր փոփոխություններ ձգվի կյանքի մեջ, ժողովրդի վիճակի բարօրության և բարերար թագավորի փառքի փառաբանության համար»:

Այսպիսով, նա ժողովրդի բարօրությունը համոզվածորեն ակնկալում էր ռուսական ցարից: Ահա թե ինչու, չենք կարող համաձայնել Կ. Դանիելյանի այն տեսակետին, որպես թե համոզումները Գ. Տեր-Մելքիսեդեկյանին «...մղում էին ընթանալ հասարակարգի արմատական վերափոխումների հեռանկարով մտահոգ մարդկանց շարքերում» (Կ. Ա. Դանիելյան, Հայ գյուղագրությունը XIX դարում, էջ 105):

Մեզ թվում է, որ իրավացի չէ Կ. Դանիելյանը, երբ Վ. Միրաքյանի հուշերից ելնելով՝ հանգել է այն համոզմանը, թե Գ. Տեր-Մելքիսեդեկյանը «հետևողական-դեմոկրատ էր», (նույն տեղը, էջ 115), կամ նա «...ելնում էր ազատության մասին ուրույն այն համոզումներից, որ մշակվել էին հեղափոխական-դեմոկրատ Միքայել Նալբանդյանի ազդեցությամբ» (նույն տեղը, էջ 105):

Գ. Տեր-Մելքիսեդեկյանը կանգնած է բուրժուական կարգերի պահպանության, նրանց հավերժացման դիրքերում և համոզմունք է հայտնում, որ եթե կիրառվի այսպես կոչված «արդար աշխատանքի սկզբունքը», հնարավոր կլինի ստեղծել ներդաշնակություն կապիտալիստների և բանվորների միջև, ձուլել նրանց մեկ դասակարգի մեջ:

«Արդար աշխատանքի» սկզբունքը մի ռեակցիոն տեսություն է, որը հակադրվում է նույնիսկ Ռիկարդոյի արժեքի աշխատանքային թեորիային:

Այդ սկզբունքի էությունը, ըստ Տեր-Մելքիսեդեկյանի, այն է, որ երկու դասակարգերը՝ գումարատերերը (капиталисты) և մշակները (рабочие) «մին միևի օգնության կարոտ լինելով պայման են կապում և էտ պայմանով հայտնի պարտավորություններ են հանձն առնում և նրանց կատարում ու այսպիսով, երկուսն էլ շահվում են»: Այդ պայմանը կապելուց հետո, շարունակում է Տեր-Մելքիսեդեկյանը. «ոչ մշակն ունի իրավունք ետ կանգնելու իր պարտականությունից ու պայմանից դուրս ավելի պահանջներ անել, ոչ էլ գումարատերն ունի իրավունք ժամանակից առաջ ետ կանգնեցնել մշակին աշխատանքից կամ չտալ մշակին նրա քրտինքի վարձը» («Աշխատանք», 1879, № 1):

Տեր-Մելքիսեդեկյանը պաշտպանում է այն վուլգար տեսակետը, թե արտադրության մեջ կապիտալիստը ներդնում է իր ունեցած կապիտալը, իսկ բանվորը՝ իր աշխատանքի ուժը, դրանց միացումից ստեղծված արդյունքը «արդար» կերպով պետք է բաժանվի կապիտալիստների ու բանվորների միջև: Հետևապես նրանք պետք է «մեկ մեկու օգնեն»: Աղքատը, քարոզում է Տեր-Մելքիսեդեկյանը, աչք չպիտի դնի հարուստի ունեցվածքին: Նրա կարծիքով աղքատությունը առաջ է գալիս մարդկանց ծուլությունից:

Ելնելով «արդար աշխատանքի սկզբունքից», Տեր-Մելքիսեդեկյանը խաբեություն և արդարության դեմ գնալ է համարում բանվորների գործադուլները, աշխատավարձը ավելացնելու, աշխատանքի պայմանները բարելավելու մասին նրանց պահանջները:

Տեր-Մելքիսեդեկյանը հանդես գալով շահագործողների պաշտպանությամբ, քննադատում է այն տնտեսագետներին, որոնք «կարծում են, թե գումարատերերը միայն հարստանալու, բանվորի աշխատանքը սեփականելու մասին են մտածում», որ նրանք «հենց միայն ծծիակերներ են ու դատարկապորտներ» («Աշխատանք», 1879, № 1): Նման ընդհանրացրած կարծիքը Տեր-Մելքիսեդեկյանը համարում է անհիմն, քանի որ «գումարատերերի հարըստությունը իր կարգով նույնպես հայտնի ֆիզիկական կամ մտավոր աշխատանքի արդյունք է»: Նա միանում է բուրժուական գռեհիկ քաղաքատնտեսության ներկայացուցիչ Տորնտոնի այն կարծիքին, որ բանվորը «իր աշխատանքի ու օտարի (այսինքն՝ կապիտալիստի— Վ. Ա.) գումարի միավորված արդյունագործությունից իր բաժինն ստանալուց հետո», իրավունք չունի «հափշտակել այդ միավորված արդյունագործության մյուս բաժինը»:

Գոտեպնդված Տորնտոնի այս դրույթով, Գ. Տեր-Մելքիսեդեկյանը ուղղակի խրատ է կարդում բանվորների գլխին, գրելով.

«Թող խելքները գլուխներն հավաքեն ու լավ հասկանան մշակները, որ գումարատերերը իրենց պաշարները չեն փոխ առել նրանցից՝ մշակներից և որ գումարատերերի այդ պաշարները նրանց մշակների համար վատ բան չէ, այլ ընդհակառակը, իսկական բարեգործություն է (նույն տեղը, ընդգծումը մերն է— Վ. Ա.):

Տեր-Մելքիսեդեկյանը գտնում է, որ աշխատանքի արդար սկզբունքը իրագործելու համար բանվորները պետք է կազմակերպվեն, կազմեն միություններ, կարողանան սկզբից իրենց աշխատավարձի մասին լավ պայմանավորվել տերերի հետ, որոնք կաշխատեն իրենց կամքը թելադրել բանվորներին: Այսպիսով, բանվորական կազմակերպությունների դերը, Տեր-Մելքիսեդեկյանի կարծիքով, լինելու է ոչ թե կապիտալիստական շահագործումը վերացնելու համար պայքարը, այլ կապիտալիզմի պայմաններում բանվորական ուժի ավելի նըպաստավոր վաճառքը՝ հասարակական կոնֆլիկտներից խուսափելու համար: Նա միաժամանակ խրախուսում էր կոոպերացիայի ու արտադրական ասոցիացիաների կազմակերպումը, որոնց միջոցով իբր թե կիրագործվի «աշխատանքի մասնակցությունը շահույթին»:

«Աշխատանք»-ի լույս տեսած համարների ու դրա խմբագրի մի քանի բրոշյուրների ուսումնասիրությունը մեզ ասում է մի բան, որ նա ըստ էության դասակարգերի համերաշխության քարոզիչ է եղել և ավելի շատ արտահայտել է եվրոպական ռեֆորմիստների, քան իր ապրած տարիների ռուսական հեղափոխական նարոդնիկության հայացքները: Այլ կերպ չի կարելի հասկանալ հեղինակի ներքոհիշյալ դատողությունը.

«Աղքատը թող մեռնի քաղցածությունից, քանի որ կարող էր աշխատել ու չի աշխատում. որովհետև առանց աշխատելու «ողորմություն» ուզելով, նա վիրավորում է արդար աշխատանքի սկզբունքը, անպատվում է Արարչի ձեռքը, որ ստեղծել էր նրան ու դրել երկրի վրա, արդար քրտինքով աշխատելու իր հացը: Մշակը նույնպես թող լռի ու չի համարձակվի ձեռք բարձրացնել հարստի վրա, քիչ վարձ ստանալու պատճառով իր աշխատանքի համար. որովհետև, ինչու էր նա առաջուց համաձայնվում աշխատիլ քիչ վարձով հարստի համար: Կամ ի՞նչ պարտական էր հարուստը, թեև երկու կոպեկ, տալ աղքատին, որ չի կամենում ապրիլ իր ձեռքի աշխատանքով: Էնպես էլ գումարատերը իրավունք չունի վրեժխնդիր լինել մշակից, եթե մշակ մարդը չի համաձայնվում շուտով գումարատերից առաջարկած պայմանին, որովհետև, ինչպես որ գումարը հարստի լիակատար սեփականությունն է, այնպես էլ աշխատանքը կամ մարմնի ուժը մշակի լիակատար սեփականությունն է: Երկուսն էլ ունեն կատարյալ իրավունք ոնց որ կամենան էնպես կարգադրեն իրանց ունեցածը:

Ուրեմն, մարդկերանց մեկ երկու հետ ունեցած հարաբերությունները ուրիշ բնական օրենքներով են կառավարվում, քան թե ինչպես շատերը կարծում են:

Եվ էդպեսով, հարուստը կամ գումարատերը չի կարող կառավարվիլ առանց մշակի օգնությամբ, մշակն էլ չի կարող կառավարվիլ առանց հարուստի օգնությամբ: Կա ուրեմն, մեկ մեկու օգնելու հարկավորություն: Էդ հարկավորությունից առաջ են գալիս երկու դասեր, երկու դասերից առաջ են գալիս պարտականություններ, իսկ պարտականություններից— պարտականությունների կատարումն, որը և վերև մենք անվանեցինք արդարություն կամ արդար աշխատանքի սկզբունք»:

Ինչպես տեսնում ենք, այս տողերի հեղինակը արտահայտում է բուրժուական տնտեսագետների այն հայացքը, որ ապրանքատերերի իրավունքը ապրանքների առքի ու վաճառքի, սեփականության գործադրման նկատմամբ ի սկզբանե է՝ սկսած աշխարհի արարչագործությունից, և ամեն մի արդարության հիմքը՝ սըրբազան սեփականությունն է: Մի սկզբունք, որը սրտանց քարոզում է վերոհիշյալ լրագրի խմբագիրը: Դեռ ավելին, իր այդ տիպիկ բուրժուական համոզումը նա տարածում է և այլ բնագավառների վրա: Օրինակ, նա գրում է.

«Համարյա թե էդ բնական արդարության սկզբունքով են լինում տերությունների ու հպատակների միջի հարաբերությունները և միջազգային հարաբերությունները:

Ուղիղ է, ամեն մարդ ունի իրավունք իշխել իր արդար աշխատանքով ձեռք բերած ստացվածքին, բայց, միլիոնավոր մարդկանց միջից կարող են դուրս գալ էնպիսի անձինք, որոնք չկամենալով հալալ աշխատանքով ապրիլ, կըցանկանային ուրիշից խլել նրա քրտինքով աշ-

խատածը, տեր դառնալ նրան ու հեշտությենով ապրիլ: Կառավարող զորությունը (տերությունը) էդ դեպքում արդարության պաշտպան է դուրս գալիս ու չէ թողնում, որ տկարը հափըշտակվի հզորից: Էդ տեղից առաջ է գալիս ազգերի հպատակություն և հարգությունը դեպի տերություն, և տերության պաշտպանությունը կամ կառավարությունը իր հպատակներին»:

Ի՞նչ է հետևում այս ամենից: Այն, որ ըստ Գ. Տեր-Մելքիսեդեկյանի, հասարակական կյանքը կառավարվում է բնական օրենքներով, որոնք կոչված են պաշտպանելու և՛ հարուստին, և՛ աղքատի «սեփականատիրական» իրավունքները: Այլ կերպ ասած, այդ բնական օրենքները սրբագործում են ու հավերժացնում հասարակական կյանքի տվյալ կացությունն իր ցցուն բևեռներով՝ կեղեքիչներով ու կեղեքվողներով: Այսպիսով, ապրանքային տնտեսության հիմքից բուսած սոցիալական բոլոր անարդարությունները հանգչում են աշխատավորի և նրան կեղեքող հարուստի սրբազան և անփոփոխ ձգտումների վրա: Նույնիսկ տերությունների և նրանց հպատակների հարաբերությունները սկզբնավորված են բիբլիական ժամանակներից և բիբլիական սկզբունքով: Միջազգային հարաբերությունները ևս խարսխված են համամարդկային արդարության պատվանդանին: Էլ չենք խոսում այն մասին, որ բուրժուական պետությունը հանդիսանում է արդարության պաշտպան և թույլ չի տալիս, որ տկարը ճնշվի հզորից: Այս մեկնակետից է նա բացատրում ընթերցողին, որ մի ազգի հպատակվելը մյուսին և հարգանքը գերիշխող ազգության նկատմամբ կեղեքվող ազգի կողմից՝ դա ևս բնական օրենքներով և ի վերուստ սահմանված է մեկընդմիշտ:

Այս ամենից հետո, կարծում ենք, հանգամանալի մեկնաբանությունները ավելորդ են: Գ. Տեր-Մելքիսեդեկյանն ուսուցում է բանվորներին, որ կապիտալիստների կուտակած արժեքները «իրենցից չեն վերցրած» և կապիտալիստների խնայողականությունը նրանց համար ոչ թե չարիք է, այլ իսկական բարիք: Իսկ սա չի՞ նշանակում, որ նա ակամա սրբագործում է հավելյալ արժեքը: «Աշխատանք»-ի խմբագիրն իրոք համոզված է եղել, որ կեղեքող և կեղեքվող «...կողմերին իրավունք է վերապահված ուժգնորեն պնդել իրենց իրավունքների վրա մինչև նրանց լիակատար համերաշխության մոմենտը...»: Եվ, ըստ հեղինակի, հասարակական մամուլը պետք է խստորեն պաշտպանի դրանցից յուրաքանչյուրի արդարացիությունը:

Այժմ ակներև է այն վիճը, որ եղել է Մ. Նալբանդյանի և նրա «հետևորդ» Գ. Տեր-Մելքիսեդեկյանի միջև: Հետևաբար, անհրաժեշտ է, որպեսզի մեր մամուլում տեղ գտած թյուրըմբռնումները և միակողմանի պնդումներն այս հարցի վերաբերյալ, շտկվեն, ելնելով «Աշխատանք» լրագրի բուն իսկ բովանդակությունից:

Իր շաբաթաթերթում Տեր-Մելքիսեդեկյանը երկինք է բարձրացնում իշխան Մուխրանսկու վարկային ընկերությունը Թիֆլիսում, որն իբր էժան վարկ է տալիս մանր տնտեսատերերին և կապիտալիստներին: Նա կոչ է անում գերապատվություն տալ Մուխրանսկու ընկերությանը:

Շահագործողների ու շահագործվողների, պետության ու ժողովրդի (տիրողների ու հպատակների) հակադիր շահերի հաշտեցումը— ահա Տեր-Մելքիսեդեկյանի հավատո հանգանակը: Նա դրանում է տեսնում նաև մամուլի և հատկապես իր թերթի դերը— ներկայացնել և՛ հարուստների, և՛ մշակների, և՛ ժողովրդական, և՛ տերունական շահերը:

Տեր-Մելքիսեդեկյանի կարծիքով, տերության ու ժողովրդի միավորված աշխատանքով հնարավոր է կյանքի մեջ «կենդանարար սկիզբներ» (живительные начала) մտցնել և որ դրա որոշողը պիտի լինի մամուլը: Եթե հասարակական կյանքում, նշում է նա, ճորտության ճնշող հիմքերը դեռ չեն վերացած, անում են ժողովրդական կարիքն ու խեղճությունը, վաճառականությունը անշարժ դրության մեջ է, գյուղացիների աշխատանքը անարտադրողական է, բանվորների աշխատավարձը՝ անբավարար, ժողովրդի մի մասը զեխ կյանք է վարում, ազնիվ հասարակական գործունեությունը մեռնում է, կնոջ հասարակական դերը դեռ չի որոշված և այլն, և այլն, ապա այդ բոլորի պատճառը իբր թե ժողովրդի անտարբերությունն է, մամուլի «գործունյա անգործունեությունը» («Աշխատանք», № 5, 1880 թ.):

Տեր-Մելքիսեդեկյանը մտահոգված է նաև հայ վաճառականության վիճակով: Նա խորհուրդ է տալիս հատկապես կարգի բերել հաշվապահությունը, որպեսզի վաճառականին չկարողանան խաբել և կողոպտել գործակատարները: «Իսկ հիմա, ճշմարիտ որ արտասվալի է հայ վաճառականության վիճակը»,— բացականչում է նա (նույն տեղը):

Շատ բնորոշ է «Աշխատանք» շաբաթաթերթի 1880 թ. 7-րդ համարի «Գրական հոգսեր» առաջնորդողը, որից երևում է, որ շաբաթաթերթը շատ քիչ ընթերցողներ ունի, բաժանորդների թիվը հրատարակման օրից հազիվ հասել է 33-ի, այն էլ «բոլորը գրեթե օտար քաղաքացիներ են»:

Իր լրագրական ձախորդությունները Տեր-Մելքիսեդեկյանը բացատրում է նրանով, որ Թիֆլիսում հայերեն, ռուսերեն, ադրբեջաներեն լույս տեսնող բոլոր լրագրերը իր դեմ են հանդես եկել կամ վարել «լռության կեղտոտ քաղաքականություն», որովհետև, իբր, «Աշխատանք» շաբաթաթերթը՝ «իրավունքների հավասարության ջատագովը, բոլոր գրական մեյմունների վրա միաժամանակյա կերպով մի տեսակ երկյուղ գցեց»: «Բոլորը, առանց բացառության,— գրում է Տեր-Մելքիսեդեկյանը,— նախազգացին, որ մի հասարակ սեմինարական ստեսաստի տակ թաքնված է սպառնումք համալսարանական դիպլոմներին առանց հանաքի ճրավիրել դեպի կանոնավոր մրցումն հասարակագիտական և տնտեսագիտական հարցերի մեջ...» (նույն տեղը, № 7, 17 ապրիլի 1880 թ.): Ինչ խոսք, որ նման բացատրությունը հիմնավոր չէ:

Գ. Տեր-Մելքիսեդեկյանը չուներ գիտական լուրջ պատրաստականություն, այդ երևում է նրա գրվածքներից, նա դիլետանտ էր, մերթ անհավասարակշիռ, մտքերը՝ հախուռն ու փոխառած մեծ մասամբ եվրոպական աղբյուրներից: Նա հետևում էր մանրբուրժուական այն իդեալիստ մտածողներին, որոնք ձգտում էին խոշոր կապիտալիստական արդյունաբերության հարվածներից պաշտպանել քայքայվող, կյանքի հատակն իջնող մանր սեփականատերերին, չվնասելով սակայն կապիտալիզմի հիմքերը: Իր շաբաթաթերթի բարձրացրած հարցերի հանրագումարը տալիս Գ. Տեր-Մելքիսեդեկյանը առանց սքողելու գրում էր. «Մըշակների հարցը զարթեցնելիս «Աշխատանքը» զգուշացրեց մշակներին, որ նրանք չհամարձակվին մեղադրել հարստությունը, մասնավորի ձեռքում դիզված դրամագլխին, մինչդեռ այդ դրամագլուխը սկզբում, իր կարգով, հարուստի աշխատանքի գործադրության անմիջական հետևանքն է ու վերջը, այդ սկզբնական փոքրիկ դրամագլուխը հետզհետե շատացել է մշակների ու դրամագլխի միասնական աշխատութինով, ըստ պայմանի» («Աշխատանք», № 7, 1880 թ.):

Տեր-Մելքիսեդեկյանը, իհարկե, տեսնում է մշակների ու գյուղացիների տնտեսական ծանր վիճակը, բողոքում է դրա դեմ, ինքն էլ հասել է տնտեսական վատթար վիճակի: Բայց դա, ըստ նրա, բխում է ոչ թե կապիտալիստական բուն սիստեմից, այլ հետևանք է բուրժուազիայի, կղերականության, չինովնիկների կողմից իրենց դիրքի չարաշահման: «Ազնիվ» վաճառականը կոտր է ընկնում իր հարևան վաճառականի խարդավանքներից կամ գործակատարների զեղծումներից, խմբագրին պլոկում է տպարանատերը և այլն:

Ինչպես տեսանք, այդ վիճակից դուրս գալու ելքը նա գտնում է «նոր, ավելի մտածված, կոոպերատիվ և արտադրական ասոցիացիաների հիմքի վրա վերստեղծված կյանքի մեջ» (նույն տեղը):

Տեր-Մելքիսեդեկյանը որպես հրապարակախոս մնաց միայնակ, աղանդավոր, ոչ մի լուրջ ազդեցություն չթողնելով շրջապատի վրա: Իսկ նրա առաջադրած խնդիրները, ըստ էության, դուրս չէին գալիս լիբերալ-բուրժուական ռեֆորմների սահմաններից:

Այսպիսով, ոչ մի հիմք չկա Գ. Տեր-Մելքիսեդեկյանին անվանելու հեղափոխական-դեմոկրատ Մ. Նալբանդյանի հետևորդ, աշխատավորական դասակարգային դիրքերի պաշտպան:

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ՀՐԱՏԱՊ ՊՐՈԲԼԵՄԻ ԼՈՒԾՄԱՆ ՈՒՇԱԳՐԱՎ ՓՈՐՁ*

Լենինյան հարուստ ժառանգության մեջ կարևոր տեղ է գրավում սոցիալիստական հասարակության գիտական կառավարման պրոբլեմը, որի հրատապությունը հատկապես շեշտվում է այժմ, ինչպես մեր երկրի ներքին զարգացման, այնպես էլ միջազգային կյանքի տեսանկյունից: Պատահական չէ, որ ՍՄԿԿ XXIV համագումարում, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց, որ գիտական կառավարման կատարելագործումը եղել և մնում է կուսակցության ամբողջ գործունեության բաղկացուցիչ մասը:

Այդ պրոբլեմի հետազոտությամբ զբաղվում են տարբեր գիտությունների ներկայացուցիչներ: Վերջին տարիներին հրապարակվել են մի շարք ուշագրավ աշխատություններ: Սակայն դրանց մեծ մասը նվիրված է տնտեսական, իրավական և տեխնիկական հարցերին: Ինչ վերաբերում է այդ բազմարնույթ պրոբլեմի սոցիոլոգիական և մեթոդաբանական մի շարք կարևոր ասպեկտներին, ապա դրանք, ինչպես նշվել է գիտական գրականության մեջ, անբավարար են մշակվել. դրանցից է կառավարման ընդհանուր (սոցիոլոգիական) սկզբունքների հարցը (տե՛ս, օրինակ, В. Г. Афанасьев. Научное управление обществом. М., 1968, стр. 380—381. А. К. Белых. Управление и самоуправление. Ленинград, 1972, стр. 19—20 и др.):

Այդ սկզբունքները հիմնական գծերով մշակվեցին գիտական կոմունիզմի հիմնադիրների կողմից, իսկ ավելի հանգամանորեն՝ Վ. Ի. Լենինի աշխատություններում: Գիտական կառավարման լենինյան սկզբունքների մասին հրապարակվել են մի շարք աշխատություններ և հոդվածներ: Անկասկած, դրանցում կա սոցիալիստական հասարակության կառավարման լենինյան առանձին սկզբունքների արժեքավոր գիտական վերլուծություն: Սակայն, ինչպես իրավացիորեն նշում է գրախոսվող աշխատության հեղինակը, պրոբլեմի հետազոտությունը դեռևս սպառված չէ: Սոցիալիստական հասարակության գիտական կառավարման հիմնական սկզբունքների ամբողջական ուսումնասիրությունների կարիքը կենսական է:

Այս առումով Լ. Մ. Կարապետյանի գիրքն արժեքավոր է: Դրա հիմնական առավելությունը լենինյան հարուստ ժառանգության այժմեական հարցերից մեկի՝ գիտական կառավարման ընդհանուր (սոցիոլոգիական) սկզբունքների համակողմանի հետազոտությունն ու լուսաբանումն է: Ընդհանուր պրոբլեմից հեղինակն առանձնացնում է մի քանի կարևոր հարցեր. սոցիալիստական հասարակարգի գիտական կառավարման նախադրյալները, օբյեկտիվ պայմանները և սուբյեկտիվ գործոնները (գլուխ առաջին), կառավարման սոցիալ-քաղաքական (գլուխ երկրորդ) և վարչա-իրավական սկզբունքները (գլուխ երրորդ):

Գրքի կառուցվածքը և հասարակության կառավարման սկզբունքների դասակարգումը պետք է հաջող և յուրօրինակ համարել: Քննարկվող պրոբլեմները լուսաբանվում են տրամաբանական փոխադարձ կապի մեջ: Մի շարք հարցեր բանավիճային բնույթ ունեն: Դրանցից մի քանիսի կապակցությամբ հեղինակը ո՛չ միայն առարկություններ է անում, այլև առաջարկում է իր հիմնավորված եզրակացությունը:

Առաջին (ներածական) գլխում խոսվում է այն մասին, որ սոցիալիստական հեղափոխության հաղթանակը միայն նախադրյալ է սոցիալիստական հասարակության գիտական կառավարման համար, իսկ տարերայնության և անարխիայի տիրապետությունից գիտական կառավարման անցնելու օբյեկտիվ պայմանները և սուբյեկտիվ գործոններն ստեղծվում են սոցիալիզմի սոցիալ-քաղաքական, տնտեսական ու հոգևոր հիմքերի ստեղծման ընթացքում: Այստեղ հեղինակն անդրադառնում է նաև այն խնդրին, որ բազմազգ երկրում գիտական կառավարման անհրաժեշտ պայմաններից մեկն ազգային հարցի լուծումն է, որն այլ հեղինակների՝ տվյալ պրոբլեմին վերաբերող աշխատություններում համարյա չի արտացոլված:

Բովանդակալից է հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների իմացության պրոցեսի և կոնկրետ պատմական իրադրության վերլուծությունը: Գրքում ընդգծվում է օբյեկտիվի և սուբյեկտիվի հարաբերության բարդ դիալեկտիկայի իմացության կարևորությունը սոցիալիստական հասարակարգում, հատկապես օբյեկտիվ պայմանների և սուբյեկտիվ գործոնի փոխգործողության առանձնահատկությունների հայտաբերման տեսանկյունից, քանի որ առանց դրա չի կարելի բազմակողմանի ճանաչել սոցիալիստական հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքները և դրանց համապատասխան գիտականորեն կառավարել հասարակությունը: Շոշափելով յուրաքանչյուր հասարակարգի զարգացման օրենքների երկու խմբի (կառուցվածքային-ֆունկցիոնալ և զարգացման օրենքներ) բաժանման հարցը, հեղինակն իրավամբ նշում է նման դասակարգման գիտական ու գործնական նշանակությունը, միաժամանակ շեշտելով այն բացարձականացնելու անթույլատրելիությունը:

«Դժվար է սահմաններ գտնել,— գրում է հեղինակը,— կառուցվածքային գործունեության և զարգացման օրենքների միջև: Իրականում յուրաքանչյուր օրենք այսպես թե այնպես արտացոլում է զարգացման պրոցեսը, նպաստում հասարակության զարգացմանը: Դժվար է գտնել զարգացմանը նպաստող գործունեությամբ չօժտված որևէ օրենք: Դրանք դրսևորվում են դիալեկտիկական միասնության մեջ: Այդ հանգամանքի ճիշտ ըմբռնումը հասարակության գիտական կառավարման համար ունի կարևոր նշանակություն» (էջ 29—30):

Հեղինակը միաժամանակ ընդգծում է, որ գիտական կառավարումը չի կարող իրագործվել առանց հասարակության զարգացման օրենքների ու հիմնական տենդենցների հետ բնության օրենքների փոխներգործության հաշվառման: Սակայն տվյալ հարցը մնում է ոչ բավականաչափ հետազոտված, համարյա չի լուսաբանվում մեր երկրում շրջապատող միջավայրի պահպանության նպատակով տարվող վիթխարի աշխատանքը:

Սոցիալ-քաղաքական սկզբունքների քննարկումն սկսվում է կառավարման համակարգի կուսակցական ղեկավարության դերի բացահայտմամբ: Կուսակցական ղեկավարության սկզբունքի քննարկումը նախ հիմնավորված է ինչպես բստ էության, այնպես էլ մեթոդաբանա- կան տեսանկյունից: Հիմնականն այն է, որ միայն մարքս-լենինյան կուսակցությունը, որպես գաղափարա-քաղաքական ղեկավար և կազմակերպիչ, կարող է ապահովել մասսա- ների կողմից հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների իմացությունը և հասարակության գիտական կառավարումը՝ սոցիալական առաջընթացի պահանջներին համապատասխան: Ելնելով գիտական կոմունիզմի և կուսակցության ծրագրային փաստաթղթերի հիմնական դրույթներից, լայնորեն օգտագործելով ՍՄԿԿ XXIII և XXIV համագումարների նյութերը, հեղինակը շարադրում է կուսակցական ղեկավարության հիմնական ձևերն ու մեթոդները: Գլխավոր ուշադրությունը նվիրվել է սովետների, արհմիությունների, տնտեսական մարմինների և սոցիալիստական կառավարման մյուս սուբյեկտների նկատմամբ իրականացվող կուսակցական ղեկավարության առանձնահատկության բացահայտմանը:

Մենագրությունում տրվում է հակակոմունիզմի գաղափարախոսների հայացքների հիմնավորված քննադատությունը: Սոցիալիստական երկրների փորձի վերլուծության հիման վրա բացահայտվում է կուսակցության ղեկավար դերի նշանակության էությունը սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման պրոցեսում:

Այստեղից տրամաբանական անցում է կատարվում դեպի սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման օրինաչափությունների վերլուծությունը, ուր հիմնական ուշադրությունը նվիրված է սոցիալիստական դեմոկրատիայի և հասարակության գիտական կառավարման փոխներգործության դիալեկտիկայի բացահայտմանը: Չի կարող լինել գիտական կառավարում առանց լայն դեմոկրատիայի, որը գիտական կառավարման սոցիալիստական բազայի հիմքն է:

Դեմոկրատիայի պրոբլեմը վերլուծելիս հեղինակը մեծ ուշադրություն է հատկացնում հասարակական կարծիքի նշանակությանը: Դեռ ավելին, նա շեշտում է, որ մասսաների հասարակական կարծիքի և փորձի կարևորումը սոցիալիստական հասարակության գիտական կառավարման հիմնական սկզբունքներից մեկն է: Ընդ որում նա ղեկավարվում է լենինյան հայտնի դրույթով. «...մենք կարող ենք կառավարել միայն այն ժամանակ, երբ ճիշտ ենք արտահայտում այն, ինչ որ գիտակցում է ժողովուրդը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 33, էջ 360—361):

Լ. Կարապետյանը առարկում է այն հեղինակներին, որոնց տեսակետով հասարակական կարծիքի բացահայտման պրոբլեմն առաջանում է այն ժամանակ, երբ տվյալ երևույթները տարբեր կարծիքներ են հարուցում (էջ 71):

---

* Լ. Մ. Կարապետյան, Սոցիալիստական հասարակության գիտական կառավարման լենինյան սկզբունքները, Երևան, «Հայաստան» հրատ., 1972, 276 էջ:

որի դեպքում դժվար է, և բոլոր հարցերը սպառիչ կերպով լուծել։

Թվում է՝ սոցիալիստական հասարակության գիտական կառավարման հիմնական սկզբունքների դասակարգումը՝ հիմնավորման տեսակետից, լրացման կարիք ունի։ Այս պրոբլեմը քննարկվում է մի շարք հեղինակների աշխատություններում (Ա. Կ. Բելիխ, Վ. Մ. Շապկո, Յ. Ա. Յամպոլսկայա և ուրիշներ) և առ այսօր վիճարկելի է։ Այդ առնչությամբ հեղինակն իր վերաբերմունքը չի դրսևորել։ Համակողմանի հիմնավորման կարիք ունեն նաև հեղինակի որոշ հանձնարարականներ ու եզրակացություններ։

Գրախոսվող աշխատությունում պատշաճ ուշադրություն չի հատկացվել հասարակության գիտական կառավարման լենինյան սկզբունքների կիրառման ու զարգացման մարզում սոցիալիստական երկրների փորձի ուսումնասիրությանը։ Մեր կարծիքով, այդ խիստ անհրաժեշտ է։

Հարկ է նշել, որ գրքում տեղ գտած մասնակի թերությունները սկզբունքային նշանակություն չունեն և չեն կարող փոխել գրախոսվող աշխատության ընդհանուր բարձր գնահատականը։ Այն գրված է տեսական պատշաճ մակարդակով, արժեքավոր, ինքնատիպ հետազոտություն է։

Մենագրության արժեքը նաև այն է, որ կարող է օգտակար լինել ինչպես կառավարման մարմինների աշխատողներին, այնպես էլ բուհերում և քաղաքական լուսավորության համակարգում գիտական կոմունիզմի դասընթացն ուսումնասիրողներին։

Մ. Ա. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Հ. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
Իրավաբանական գիտությունների թեկնածու, դոցենտ



Адрес редакции: 375033, Ереван-33, Барекамутян 59 г.
Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64։

ՎՖ 05405 Պատվեր 842 Թղթի չափսը 70×108 1/16։ Տիրաժ՝ 13.500 Գինը 20 կ.։

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 11/IX—1974 թ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյան փող. № 28։

# ՁԵԶ ՀԱՄԱՐ, ԸՆԹԵՐՑՈՂՆԵ՛Ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պետություն և հեղափոխություն։ Մարքսիզմի ուսմունքը պետության մասին և պրոլետարիատի խնդիրները հեղափոխության մեջ։ Մ., «Политиздат», 1974։

Վ. Ի. ԼԵՆԻՆ— «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ։ Մ., «Политиздат», 1974։

Վ. Ի. ԼԵՆԻՆ — Ի՞նչ անել։ Մ., «Политиздат», 1974։

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պետության մասին։ Մ., «Политиздат», 1974։

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ապրիլյան թեզիսներ։ Մ., «Политиздат», 1974։

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Հանուն արդարացի, դեմոկրատական խաղաղության, հանուն ժողովուրդների անվտանգության և միջազգային համագործակցության։ Մ., «Политиздат», 1974։

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ.— ՍՄԿԿ ագրարային քաղաքականության հարցերը և Ղազախստանի խոպան հողերի յուրացումը։ Ճառեր և զեկուցումներ։ Մ., «Политиздат», 1974։

Լ. Ի. Բ[...]ՐԵԺՆԵՎ— Ճառ ՀամԼԿԵՄ XVII համագումարում (1974 թ. ապրիլի 24-ին)։ «Հայաստան» [...] հրատ., 1974։

ՍՄԿԿ տ[...]նտեսական քաղաքականության հարցերը արդի ժամանակաշրջանում։ Կուսակցական ո[...]ւսուցման սիստեմի տնտեսական կրթության համար։ Մ., «Политиздат», 1974։

Վ. Կ. ՑԵԴ[...]ԻՆԻՆ— Սոց[...]իալիստական մրցությունը ժամանակակից էտապում։ Մ., «Экономика» հրատ., 1974։

Գ. Խ. ՊՈՊՈՎ— [...] կառավա[...]րման տեսության պրոբլեմները։ Մ., «Экономика» հրատ., 1974։

Լ. Ա. ԼԵՈՆՏԵՎ— [...]րատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքները սոցիալիստական արտադրության [...]վարման մեջ։ Մ., «Экономика» հրատ., 1974։

Գ. Խ. ՆԵՐՍԻՍՅԱՆ— Աշխատավորների մասնակցությունը արտադրության կառավարմանը (օգնություն դասախոսին)։ Ե., «Գիտելիք» ընկերության հրատ., 1974։

Ջ. ԱՍԼԱՆՅԱՆ— Կյանք, որ նման է լեգենդի (վավերագրական վիպակ)։ «Հայաստան» հրատ., 1974։

Գիրքը նվիրված է գեներալ Քրիստափոր Նիկոլայի Ալավերդյանի (1895—1942) կյանքին ու հեղափոխական գործունեությանը։

Ա. Ն. ՍԱՐԳՍՅԱՆ, Մ. Ա. ԽԱՐԱՋՅԱՆ (կազմողներ)— Լուվրի կամարների տակ։ «Հայաստան» հրատ., 1974։

Կազմողները ժողովել և ներկայացրել են «Հայկական արվեստը Ուրարտուից մինչև մեր օրերը» ցուցահանդեսի վերաբերյալ արտասահմանյան մամուլի տեսությունները, հոդվածները և այլ նյութեր։

Մ. Գ. ԴՈՒԿԱՍՅԱՆ— Բաց նամակ երկու միլիոն հասցեով (հոդվածների ժողովածու), «Հայաստան» հրատ., 1974։

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՂԱՀԱՎԱՔ ԿՈՄԲԱՅՆ

*Չելյաբինսկի մարզի Կոպեյսկ քաղաքի Ս. Մ. Կիրովի անվան մեքենաշինական գործարանն սկսել է կալիական աղի հանույթի «Урал—20 КС» լեռնային հզոր կոմբայնների սերիական թողարկումը:*

*Նոր մեքենան կարող է անցնել մինչև 20 քմ կտրվածքով աղի շերտերի ստորգետնյա միջանցքներով, հավաքելով և վագոններին բեռնելով օրական մոտ 2.000 տոննա հումք: Այդպիսի հանքախորշերում ազատ կարող է անցնել բեռնատար մեծ ավտոմեքենան: Կոմբայնն ունիվերսալ է, հարմարեցված պայթանցքերի փորման համար:*

## ՄԵՂՈՒՆԵՐՆ ԸՆԴԴԵՄ ՌԵՆՏԳԵՆԻ

*Եվրոպական մի խումբ գիտնականներ հայտնաբերել են մեղվաթույնի մի հիանալի հատկություն ևս. այն ունակ է կենդանի օրգանիզմները պաշտպանելու ռենտգենյան ճառագայթների վնասակար ազդեցությունից: Փորձի ժամանակ սպիտակ մկների մաշկի տակ սրսկել են այդ թույնից պատրաստված պրեպարատ: Ստուգվող խմբին չի ներարկվել: Այնուհետև մեծ դոզայով ճառագայթում են տվել: Մեղվաթույն ստացած մկները կենդանի են մնացել:*

*Փորձերը շարունակվում են՝ մարդկանց համար համապատասխան դեղամիջոցներ ստեղծելու նպատակով:*

## ԳԵՐՄԱՔՈՒՐ ԱԼՅՈՒՄԻՆ

*Լեհական Տշեբինե քաղաքի մետալուրգիական գործարանում ստացվել է, այսպես կոչված, գերմաքուր ալյումին, որն անհրաժեշտ է ճշգրիտ էլեկտրոնային սարքավորման արտադրության համար:*

## ԶԱՐԹՈՒՑԻՉ ԱԿՆՈՑՆԵՐ

*Ծանր բեռնատարի վարորդների համար հոգնեցուցիչ են գիշերային ժամերը խճուղիներում: Մոտորի միալար աղմուկը, գիշերային նույնակերպ բնությունը, առկայծող լույսերը քուն են բերում վարորդի աչքերին:*

*ՉՍՍՀ-ի գիտությունների ակադեմիայում ստեղծվել է փոքրածավալ մի սարք, որը հետևում է վարորդի վիճակին: Պլաստմասսայե ակնոցի վրա զետեղված են կոնտակտներ, որոնք միանում են, հենց որ մարդը 3 վրկ-ից ավելի աչքերը փակում է, և անմիջապես լսվում է փոքր հզորության սիրենայի սթափեցնող ձայնը: Ձայնային ազդանշանն սկսում է գործել նաև այն ժամանակ, երբ արտևանունքներն անկանոն են թարթում:*

## ԳՐՊԱՆԻ ՀԱՇՎԱՐԿԻՉ

*ԳԴՀ-ի Էրֆուրտ քաղաքի «Յունկվերկ» գործարանում ստեղծել են «Մինիրեքս—73» էլեկտրոնային հաշվարկիչը, որը պիտանի է ո՛չ միայն հաշվապահներին, այլև ինժեներներին: Բացի թվաբանական չորս գործողություններից, սարքը կարող է աստիճան բարձրացնել թվերը, կատարել կոմբինացված գործողություններ, տոկոսը գտնել: Պահանջվող տեղում ավտոմատիկորեն դրվում է ստորակետ՝ ամբողջը կոտորակից անջ[illegible] համար:*

*300 գրամա[illegible]յդ հաշվարկիչը սնուցումն ստան[illegible] 7,2 վոլտ լարման մարտկոցից: [illegible]գիան բավականացնում է հինգժամ անընդմեջ աշխատանքին:*

## ՊԼԱՍՏՄԱՍՍԱ՝ ԿԱՐՏՈՖԻԼԻ ԿԵՂԵՎԻՑ

*Բիրմինգհեմի (Անգլիա) համալսարանի օրգանական քիմիայի լաբորատորիայում ստացվել են պլաստմասսայի նմուշներ, որոնց համար հումք են ծառայել թեփը, ծղոտը, ցածր տեսակի օսլան, կարտոֆիլի կեղևը: Այդ մնացուկները նախապես ֆերմենտացնում են, ապա զանգվածից անջատում ածխաջրածնային միացությունների հիդրատները, որոնք պիտանի են հետագա մշակման և պոլիմերացման համար:*

*Նոր պլաստմասսայից կարելի է պատրաստել թեթև և ամուր տարա, փաթեթաժապավեն, մանածագործական մեքենաների մասեր, մոխրամաններ և կենցաղային այլ իրեր:*